Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (103)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (103)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

*(ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ— ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 17-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ)*

Տասնյոթ տարի է անցել այն օրից, երբ մահացավ Լենինը։ Սակայն և այսօր, ինչպես և այն ժամանակ, 1924 թվի հունվարյան ցրտաշունչ օրերին, Լենինի, մեր հարազատ, սիրելի Իլյիչի կերպարը կենդանի կանգնած է մեր առջև։ Մինչև այսօր էլ աշխարհի տասնյակ միլիոնավոր մարդիկ նույնպիսի սիրով ու ակնածանքով կրկնում են Լենինի անունը։

Լենինը մտածողի տեսական հզորությունը զուգակցում էր իր մեջ մեծ առաջնորդի, մասսաների կազմակերպչի հզորության հետ։

Լենինը պահպանեց Մարքս-Էնգելսի ռևոլյուցիոն ուսմունքի անաղարտությունը, զարգացրեց այդ ուսմունքը նոր պայմաններում, հարստացրեց այն։

Լենինն ստեղծեց բոլշևիկների մարտական, ռևոլյուցիոն պարտիան, համախմբելով նրա շուրջը մեր երկրի բանվոր դասակարգին և նրան աշխատավոր գյուղացիության հետ միասին առաջնորդեց դեպի հաղթական գրոհը՝ կապիտալիզմի ամրոցների վրա։ Լենինի ղեկավարությամբ մեր երկրում կատարվեց մեծ Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյուցիան, հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրան, ստեղծվեց սովետական, սոցիալիստական, բանվորա-գյուղացիական պետություն։ Լենինը ցույց տվեց ողջ աշխատավոր մարդկությանը՝ ազատագրության ուղին։

«Լենինի վեհությունն առաջին հերթին հենց կայանում է նրանում, որ նա ստեղծելով Սովետների Ռեսպուբլիկան, դրանով գործնականորեն ցույց տվեց ողջ աշխարհի ճնշված մասսաներին, թե փրկության հույսը կորած չի, թե կալվածատերերի և կապիտալիստների տիրապետությունը երկարատև չի, թե աշխատանքի թագավորությունը կարելի է ստեղծել հենց իրենց՝ աշխատավորների սեփական ջանքերով, թե աշխատանքի



թագավորությունը պետք է ստեղծել երկրի վրա և ոչ՝ երկնքում։ Դրանով նա վառեց ողջ աշխարհի բանվորների և գյուղացիների սրտերն ազատագրման հույսով։ Հենց դրանով էլ բացատրվում է այն փաստը, որ Լենինի անունը դարձել է աշխատավորների և շահագործվողների ամենասիրելի անունը» (Ի. Վ. Ստալին. Ճառ Սովետների համամիութենական 2-րդ համագումարում 1924 թ. հունվարի 26-ին. ժողովածու «Լենինի մասին». ռուսերեն)։

Լենինը վախճանվեց, սակայն Լենինի գործը անմահ է։ Անմահ են մեծ լենինյան գաղափարները,— նրանք ապրում են սոցիալիզմի հաղթանակներում, սովետական ժողովրդի հերոսական գործերում, այն ժողովրդի, որը բոլշևիկների պարտիայի և մեծ Ստալինի ղեկավարությամբ և Լենինի նշած ուղիով միշտ առաջ է ընթանում— դեպի կոմունիզմը։

«Լենինն ապրում է ամեն տեղ, որտեղ կան ռևոլյուցիոներներ,— գրում է Հանրի Բարբյուսը։— Սակայն, կարելի է ասել, ոչ ոքի մեջ այնպես չի մարմնացել Լենինի միտքն ու խոսքը, ինչպես Ստալինի մեջ։ Ստալինը՝ դա Լենինն է այսօր»։

Ստալինը Լենինի հետ միասին ստեղծեց և ամրապնդեց բոլշևիկների պարտիան. Լենի-

նի հետ միատեղ նա առաջնորդեց բանվոր դասակարգին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող մարտերում, Լենինի հետ միատեղ ստեղծեց և կառուցեց սովետական պետությունը։ Ստալինն ընդունեց Լենինի ձեռքից սովետական ռևոլյուցիայի դրոշը, կոմունիզմի դրոշը և տվեց առաջնորդի դագաղի առջև մեծ երդում՝ պահպանել և պատվով կատարել Լենինի պատգամները. դա՝ ողջ բոլշևիկյան պարտիայի երդումն էր։

Ընկեր Ստալինը երդվեց, որ պարտիան բարձր և անաղարտ կպահի պարտիայի անդամի կոչումը. պահպանել մեր պարտիայի միասնությունը, աչքի լույսի պես պահպանել և ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան. ամրապնդել ամեն ջանքերով բանվորների և գյուղացիների դաշինքը, ամրապնդել և ընդլայնել Ռեսպուբլիկաների Միությունը. ամրապնդել Կարմիր Բանակն ու Կարմիր Նավատորմիղը. ամրապնդել, ընդլայնել ողջ աշխարհի աշխատավորների դաշինքը— Կոմունիստական Ինտերնացիոնալը։

Ստալինյան երդումը սրբորեն և անխախտելիորեն կատարվում է բոլշևիկների պարտիայի կողմից, որին ղեկավարում է Լենինի գործի մեծ շարունակողը— ընկեր Ստալինը։



Ստալինը պաշտպանեց թշնամիներից լենինյան ուսմունքը, զարգացրեց և հարստացրեց այն և այժմ նա անսասան ձեռքով ղեկավարում է Սովետական պետության նավը, տանելով նրան նշած ուղիով։ Լենինի-Ստալինի ուսմունքին հավատարիմ՝ բոլշևիկների պարտիան, սովետական ժողովրդին հանգեցրեց սոցիալիզմի հաղթանակներին, հանեց մեր երկիրը սոցիալիստական ծաղկման և հզորության ճանապարհը։

## ՀԱՂԹՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆ

Որպեսզի պատկերացվի թե ինչպիսի շլացուցիչ փոփոխություններ են կատարվել սովետական երկրում, պետք է հիշել, թե ինչի՞ց մենք սկսեցինք։

Ցարիզմից մեզ ժառանգություն հասավ աղքատ, հետամնաց, քայքայված մի երկիր։ Ահա, 1920 թ. Լենինի նկարագրած պատկերը. Վոլոգդայից հյուսիս, Դոնի Ռոստովից և Սարատովից հարավ-արևելք, Օրենբուրգից ու Օմսկից հարավ, Տոմսկից հյուսիս ընկած են անծայրածիր տարածություններ, որոնց վրա մի քանի տասնյակ կուլտուրական վիթխարի պետություններ կտեղավորվեին։ Այս բոլոր տարածությունների վրա նահապետականությունը, կիսավայրենությունն ու ամենաիսկական վայրենությունն է թագավորում։

Իսկ մնացած ամբողջ ռուսական գյուղացիական խուլ անկյուններո՞ւմ։ Իսկ այն բոլոր վայրերո՞ւմ, որտեղ գյուղերի միջև ընկած ու տասնյակ վերստեր ձգվող տարածությունները բաժանում են գյուղը երկաթուղուց, այսինքն քաղաքակրթության՝ կապիտալիզմի, խոշոր արդյունաբերության, մեծ քաղաքի հետ ունենալիք նյութական կապից»։ (Վ. Ի. Լենին, Երկեր հատ., XXVI էջ 482, Պետհրատ, 1931 թ. հայերեն)։

Այդ մանր գյուղացիական, հետամնաց երկրում, մի երկիր, որին իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմները ծայր աստիճանի քայքայել էին, խնդիր էր ծառացել՝ կառուցել սոցիալիզմ։ Դրա համար անհրաժեշտ էր ոչ միայն վերականգնել պատերազմից քայքայված երկիրը, այլև, ինչպես Լենինն է արտահայտվում, իջնել գյուղացիական աղքատացած ձիուց և նստել խոշոր մեքենայական ինդուստրիայի ձիուն, այսինքն՝ անհրաժեշտ էր ստեղծել երկրում խոշոր արդյունաբերություն, ընդ որում, ոչ թե կապիտալիստական, մասնավոր սեփականատիրական, այլ սեփական, պետական, սոցիալիստական արդյունաբերություն։

«Խնդիրն այն էր, որ այդ երկիրը միջնադարի ու խավարի ռելսերից փոխադրենք ժամանակակից ինդուստրիայի և մեքենա-



յացված գյուղատնտեսության ռելսերի վրա։ Ինչպես տեսնում եք՝ խնդիրը լուրջ էր և դժվարին։ Հարցն այսպես էր դրված. Կամ կլուծենք մենք այդ խնդիրն ամենակարճ ժամանակամիջոցում և կամրապնդենք մեր երկրում սոցիալիզմը, կամ մենք չենք լուծի այն, և այն ժամանակ տեխնիկապես թույլ ու կուլտուրական տեսակետից խավար մեր երկիրը կկորցնի իր անկախությունը և կդառնա իմպերիալիստական պետությունների խաղի առարկա»։ (Ի. Ստալին. «Լենինիզմի հարցերը» էջ 595, 11-րդ հրատար. Քաղհրատ. 1940. հայերեն)։

Դեռ 1917 թ. Լենինը գրում էր.

«Պատերազմն անողոք է. նա հարցը դնում է անողոք կտրականությամբ՝ կամ կործանվել, կամ հասնել առաջավոր երկրներին և նրանցից առաջ անցնել նաև տնտեսապես...

Կործանվել, կամ ամբողջ թափով նետվել առաջ։ Պատմությունն այսպես է դրել հարցը»։ (Վ. Ի. Լենին. «Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ». Պարտհրատ. Երևան. 1934 թ. էջ 70—71. առանձին բրոշյուրով)։

Լենինը նշեց, որ սոցիալիզմի նյութական բազան հանդիսանում է ծանր արդյունաբերությունը և խնդիր առաջադրեց կործանումից՝ առաջին հերթին փրկել ծանր արդյու-

նաբերությունը, վերակառուցել, բարձրացնել նրան. ողջ ժողովրդական տնտեսության հիմքում դնել էլեկտրիֆիկացիայի բազան, առաջավոր տեխնիկայի բազան և հենվելով խոշոր արդյունաբերության վրա, վերակառուցել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Շատ անքուն գիշերներ է լուսացրել Վլադիմիր Իլիչը՝ ԳՈԷԼՌՕ-ի պլանի աշխատանքների վրա։

«Միայն այն ժամանակ, երբ երկիրն էլեկտրիֆիկացիայի ենթարկված կլինի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը հիմնված կլինեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք վերջնականապես կհաղթենք»։ (Վ. Ի. Լենին. Երկեր. հատոր XXVI էջ 67, Պետհրատ. Երևան. 1931 թ. հայերեն)։

Վ. Ի. Լենինի մահվան տարում, երկրի ժողովրդական տնտեսությունը դեռ նոր միայն բուժվում էր իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների հասցրած վերքերից։ Արդյունաբերությունը վերականգնըվում և զարգանում էր դեպի սոցիալիզմը, սակայն դեռ նրա 20%-ը գտնվում էր մասնավոր կապիտալի ձեռքերում։ 1924 թվի գյուղատնտեսությունը իրենից ներկայացնում էր մանր, անհատ, հե-



տամնաց, միջնադարյան տեխնիկա ունեցող գյուղացիական տնտեսությունների մի անծայր օվկիանոս։ Այդ օվկիանոսում կոլխոզները և սովխոզները գոյություն ունեին, որպես առանձին կետեր և կղզիներ։ Սակայն այդ փոքրաթիվ կոլխոզները և սովխոզները ժողովրդական տնտեսության մեջ որևե լուրջ նշանակություն չունեին։

Կուլակները գյուղում դեռ բավականին զգալի ուժ էին ներկայացնում։ Ապրանքաշըրջանառության մեջ՝ պետական և կոոպերատիվ առևտուրն զբաղեցնում էր միայն 50—60 տոկոսը. մնացած առևտուրը գտնըվում էր վաճառականների, սպեկուլյանտների և այլ մասնավորների ձեռքում։

Ընկեր Ստալինը ղեկավարվելով լենինյան ուսմունքով և այն, է՛լ ավելի զարգացնելով, սոցիալիստական ինդուստրիալիզացիայի բոլշևիկյան համարձակ և գիտականորեն հիմնավորված պլան մշակեց։ Այդ պլանն ընդունվեց պարտիայի պատմական 14-րդ համագումարի կողմից և օրենք դարձավ բոլոր բոլշևիկների ու լենինցիների համար։

Կոնտրռեվոլյուցիայի, սպիտակ գվարդիականության, լրտեսության, տեռորի, վնասարարության և դիվերսիաների ճահճում թաղված՝ լենինիզմի թշնամիները՝ տրոցկիստները, բուրժուական նացիոնալիստները,

փորձում էին վախեցնել պարտիային՝ պայքարի դժվարություններով, սերմանել անհավատություն դեպի բանվոր դասակարգի ուժերը, շեղել երկրին սոցիալիստական շինարարության ուղուց։ Կապիտուլյանտները, ադանդավորները, երկերեսանիները, դավաճանները վախեցնում էին պարտիային, սպառնում էին նրան։

«...Նրանք հույս ունեին վախեցնել մեզ և հարկադրել մեզ շեղվել լենինյան ուղուց։ Այդ մարդիկ, երևի, մոռացել էին,—ասում էր ընկեր Ստալինը,—որ մենք, բոլշևիկներս, հատուկ ձևվածքի մարդիկ ենք։ Նրանք մոռացել էին, որ բոլշևիկներին չես վախեցնի ո՛չ դժվարություններով, ո՛չ էլ սպառնալիքներով։ Նրանք մոռացել էին, որ մեզ կոփել է մեծ Լենինը, մեր առաջնորդը, մեր ուսուցիչը, մեր հայրը, որը երկյուղ չգիտեր և երկյուղ չէր ճանաչում պայքարում։ Նրանք մոռացել էին, թե որքան ուժգին են մոլեգնում թշնամիները և որքան ավելի հիստերիկայի մեջ են ընկնում հակառակորդները պարտիայի ներսում, այնքան ավելի են տաքանում բոլշևիկները նոր պայքարի համար և այնքան ավելի շեշտակի են առաջ շարժվում նրանք»։ (Ի. Ստալին. «Լենինիզմի հարցերը». 11-րդ հրատարակ. էջ 597, հայերեն. Քաղհրատ, 1940 թ.)։



Վերականգնելով ժողովրդական տնտեսությունը լենինյան-ստալինյան պլանով, սովետական երկիրն սկսեց հզոր սոցիալիստական ինդուստրիայի, առաջին հերթին՝ ծանր ինդուստրիայի և նրա ուղն ու ծուծը կազմող՝ մեքենաշինության կառուցումը, այնպիսի ինդուստրիայի, որն ընդունակ էր զինել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն առաջավոր տեխնիկայով, ընդունակ էր հագեցնել Կարմիր Բանակը և Ռազմածովային նավատորմիղն առաջնակարգ սպառազինությամբ։

Կապիտալիստական երկրներն իրենց արդյունաբերությունն ստեղծելիս, միջոցները ստանում էին իրենց ժողովրդի դաժան շահագործումից, գաղութների և կիսագաղութների կողոպուտից։

Սոցիալիստական պետությունը չէր կարող դիմել այդպիսի կեղտոտ աղբյուրների օգնությանը, իսկ ստրկացուցիչ փոխառություններ անելու քայլը երբեք արդեն չէր անի։

Սոցիալիստական ինդուստրիալիզացիայի համար, որպես աղբյուր հանդիսացան սոցիալիստական կուտակումը, խնայողությունն ամեն ինչում, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, պրոդուկցիայի ինքնարժեքի իջեցումը, աշխատանքի կարգապահության ամրապնդումը, բանվոր

դասակարգի աշխատանքային ակտիվության աճը։

«...Պետք էր զոհողություններ անել և ամեն բանում ամենախիստ խնայողություն մտցնել, պետք էր խնայողություն անել թե՛ սննդի, թե՛ դպրոցների, թե՛ մանուֆակտուրայի ասպարեզում, որպեսզի անհրաժեշտ միջոցներ կուտակեինք՝ ինդուստրիա ստեղծելու համար։ Տեխնիկայի բնագավառում եղած սովը վերացնելու համար այլ ուղի չկար։ Այդպես է սովորեցրել մեզ Լենինը, և մենք այդ գործում ընթացել ենք Լենինի հետքերով»։ (Նույն տեղ. էջ 596)։

Բանվոր դասակարգը ոչ միայն այդ զոհողություններն արավ, այլև ցուցաբերեց սոցիալիստական անձնազոհ աշխատանքի դեռ մինչ այդ չտեսնված օրինակներ։

Հիշե՛նք ստալինյան առաջին հնգամյակի հերոսական տարիները, երբ ողջ երկիրը ծածկվեց կառուցումների անտառով—Վոլգայի վրա և Ուկրաինայում, Կովկասում և Սիբիրում, Ուրալում և Դոնի վրա, սովետական պետության անծայրածիր տարածություններում կառուցվում էին նոր գործարաններ և հանքեր, նավթահանքեր, կառուցվում էին ֆաբրիկաներ, էլեկտրոկայաններ, նոր երկաթուղիներ, հորատվում էին նոր շախտեր։ Այդ տարիները կյանքի կոչեցին սոցիալիս-



տական մրցման մի հզոր ալիք, բանվոր դասակարգի ընդերքում առաջացավ հարվածայինների հիանալի շարժումը։

Մարդիկ աշխատում էին առանց իրենց ուժերը խնայելու, չհաշվելով ժամանակի հետ, չկանգնելով և ոչ մի դժվարության առջև։ Այստեղ տեղի էր ունենում ճիշտ նույն էնտուզիազմը, ինչ և քաղաքացիական պատերազմի տարիներին, երբ Լենինը գրում էր «գիտակցականորեն սոցիալիզմի հաղթանակի գործին զոհողություններ անող աշխատավոր մասսաների հերոսության» մասին։

## ՄԵԾ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐԸ

Ինդուստրիալիզացիայի լենինյան-ստալինյան պլանի չտեսնված կարճ ժամկետներում իրագործելու հետևանքով, կատարվեց տնտեսապես հետամնաց ագրարային երկրի վերածումը հզոր, ինդուստրիալ պետության։

ՍՍՌՄ-ն մեքենաներ և կահավորում ներմուծող երկրից վերածվեց մեքենաներ և կահավորում արտադրող երկրի։ Մեզ մոտ ըստեղծվեցին արդյունաբերության այնպիսի ճյուղեր, որոնք Ռուսաստանում առաջ չկային—հզոր սև և գունավոր մետալուրգիա,

տրակտորային արդյունաբերություն, ավտոմոբիլային արդյունաբերություն, ղաղգյաՀաշինություն, քիմիական արդյունաբերություն, ավիացիոն արդյունաբերություն, խոշոր գյուղատնտեսական մեքենաների արդյունաբերություն։ Արմատապես և անճանաչելիորեն վերակառուցվել է Հին արդյունաբերությունը։

Արդյունաբերության արտադրանքի ծավալի տեսակետից ՍՍՌՄ-ն առաջին տեղն է գրավում Եվրոպայում, և երկրորդ տեղը՝ աշխարհում, իր առաջին այժմ ունենալով միայն ԱՄՆ-ը։ Սակայն, չէ՞ որ ոչ-շատ ժամանակ սրանից առաջ, արդյունաբերության արտադրանքի ծավալի տեսակետից՝ Ռուսաստանը խոշոր պետությունների շարքում գրավում էր վերջին տեղը։

1939 թվի սկզբին— 18-րդ պատմական Համագումարի ժամանակներին,— սովետական արդյունաբերության արտադրանքը մինչպատերազմյան մակարդակի Համեմատությամբ, աճել է ավելի քան 9 անգամ, իսկ այս անցած երկու տարիների ընթացքում մեր արդյունաբերությունն է՛լ ավելի զգալիորեն առաջ է գնացել։ ՍՍՌՄ արդյունաբերության 1939 թ. արտադրանքը 1938 թ. Համեմատությամբ աճել է 14,7 տոկոսով։ 1940 թվին, չնայած այն լուրջ դժվարություններին, որոնք կրեց արտադրությունը տարվա ըն-



կրոգրներին՝ միջազգային դրության կապակցությամբ, այնուամենայնիվ արդյունաբերական արտադրանքի աճը 1939 թվի Համեմատությամբ, անգամ զգույշ Հաշվումներով, կազմում է 11 տոկոս։

Սովետական արդյունաբերությունն իր զարգացման տեմպերով և նոր տեխնիկայի Հագեցումով, առաջին տեղն է գրավում աշխարհում։ Այժմ մեր առջև խնդիր է ծառացած՝ անցնել առաջավոր կապիտալիստական երկրներից նույնպես և տնտեսապես։ Դա նշանակում է, որ մենք պետք է լինենք աշխարհում առաջին տեղը, ոչ միայն արտադրանքի ընդհանուր ծավալի տեսակետից, այլև ազգաբնակչության մեկ հոգուն ընկնող արտադրանքի չափի տեսակետից։

Մեր սոցիալիստական արդյունաբերությունն առանց կանգնումների առաջ է ընթանում այն ուղիով, որը նշել է Լենինը և շարունակվել է Ստալինի կողմից։ Հենց այդպիսի ուղիով է ընթացել նաև գյուղատնտեսության զարգացումը, նրա սոցիալիստական վերակառուցումը։

***

Լենինը ասում էր գյուղացիներին.

«Եթե մենք շարունակենք նստել մանր գյուղացիական տնտեսություններում Հին ձևով, թեկուզ և ազատ քաղաքա-

գյուղի ազատ հողի վրա, միևնույնն է մեզ անխուսափելի կործանում է սպառնում»։ (Ленин.— Соч., том XX, стр. 417 ռուսերեն)

Լենինն ասում էր. «Ապրել հին ձևով... չի կարելի, և մարդկային ուժերի ու աշխատանքի այդպիսի վատնում, ինչպիսին կապված է մանր, առանձնացած գյուղացիական տնտեսության հետ, այլևս շարունակվել չի կարող։ Կրկնակի և եռակի կերպով կբարձրանար աշխատանքի արտադրողականությունը, կրկնակի և եռակի կերպով կխընայվեր մարդկային աշխատանքը հողագործության համար և մարդկային տնտեսության համար, եթե այդ մանրացած փոքր տնտեսությունից անցում կատարվեր հասարակական տնտեսությանը»։ (Ленин.—Соч., том. XXIII, стр. 424).

Լենինը պարտիային պատգամ թողեց՝ ամեն կերպ ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը։ Սոցիալիզմի թշնամիները փորձում էին խախտել այդ դաշինքը, կործանել նրա ուժը. շնորհիվ ստալինյան զգոնության, թշնամական դավերն այդ խընդրում ևս մերկացվեցին։ Բանվորի և գյուղացու դաշինքը պահպանեց և ամրապնդեց բոլշևիկների պարտիան։

Ընկեր Ստալինը՝ գյուղացիությունը սո-



ցիալիստական հունի մեջ գրավելու լենինյան կոոպերատիվ պլանը պաշտպանեց թշնամական հարձակումներից, զարգացրեց և իրագործեց այն կյանքում։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ ստեղծված խոշոր արդյունաբերությունն սկսեց գյուղը մատակարարել տրակտորներով ու զանազան գյուղատնտեսական մեքենաներով։

Սովետական գյուղացիությունը համոզվելով կոլեկտիվ տնտեսության առավելություններում, լիովին հակվեց կոլխոզների կողմը, բռնեց սոցիալիզմ տանող ճանապարհը։ Ընկրվեց գյուղատնտեսության մասսայական կոլեկտիվացումը և նրա հիման վրա — կուլակության վերացումը, որպես դասակարգ։

Գյուղատնտեսության կոլեկտիվացումով լուծվեց՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայից հետո՝ ամենադժվար խնդիրը — միլիոնավոր մանր գյուղացիական տնտեսությունների փոխադրումը խոշոր կոլեկտիվ տնտեսության ուղու վրա, սոցիալիզմի ուղու վրա։ Դրանով կատարվեց Լենինի կարևորագույն պատգամներից մեկը։

ՍՍՌՄ-ն վերածվեց աշխարհի ամենախոշոր և ամենամեքենայացված գյուղատնտեսության երկրի։ Իրականացվեց Լենինի երազը թե՝ «Եթե մենք կարողանայինք վաղը տալ 100 հազար առաջնակարգ տրակտոր-

ներ, մատակարարել նրանց բենզինով, մատակարարել մեքենավարներով (դուք, հիանալիորեն գիտեք, որ դա դեռ ֆանտազիա է), ապա միջակ գյուղացին կասեր՝ «ես կոմունիայի կողմն եմ» (այսինքն՝ կոմունիզմի կողմը)»:
(Ленин. — Соч., т. XXIV, стр. 170).

Այդ երազը հարյուր հազար տրակտորների մասին իրականացված է կյանքում դեռ առաջին հնգամյակի տարիներին: Իսկ 1940 թ. մեր գյուղատնտեսությունը (կոլխոզները, սովխոզները) ունեին արդեն կես միլիոնից ավելի տրակտոր, համարյա 169.000 կոմբայն (երկու անգամ ավելի շատ, քան ամբողջ կապիտալիստական երկրները միասին վերցրած), հարյուր հազարներով ավտոմեքենաներ և զանազան նորագույն գյուղատնտեսական գործիքներ:

Ցորենի, հաճարի, գարու, վարսակի արտադրությամբ, Սովետական Միությունն այժմ աշխարհում առաջին տեղն է գրավում:

Կոլխոզային գյուղացիությունը, շնորհիվ կոլեկտիվ ու կազմակերպված աշխատանքի, շնորհիվ հզոր տեխնիկայի, շնորհիվ սոցիալիստական գյուղում աճեցրած նոր մարդկանց, կարողացավ հաղթահարել բնության քմահաճույքները. այս տարվա հացահատիկի համախառն բերքը մոտ է ռեկորդայինի, այն կազմում է համարյա 7 միլիարդ փութ:

***

Կապիտալիզմը վերջնականորեն արտաքսված է մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերից— արդյունաբերության մեջ, գյուղատնտեսության մեջ, առևտրում, տիրապետում է սոցիալիստական սիստեմը:

Սովետական երկրում ոչնչացված են շահագործող դասակարգերը, ոչնչացված է մարդու շահագործումը՝ մարդու կողմից: ՍՍՌՄ ժողովուրդներն ունենալով իրենց ղեկավարը՝ մարտերում կոփված Լենինի-Ստալինի պարտիան, հիմնականում կառուցեցին սոցիալիստական հասարակությունը: Սոցիալիզմի հաղթանակների շնորհիվ, սովետական քաղաքացիները նվաճել են այնպիսի մեծագույն իրավունքներ, որոնց մասին դարերով երազել են մարդկության լավագույն գլուխները.— աշխատանքի իրավունք, կրթության իրավունք, հանգստի իրավունք, ծերության հասակում նյութական ապահովության իրավունք: Ստալինյան Կոնստիտուցիան—ամենադեմոկրատականն աշխարհում— վավերացնում է այն համաշխարհային-պատմական փաստը, որ ՍՍՌՄ-ում հիմնականում կառուցված է սոցիալիզմը: Երկիրը թևակոխել է զարգացման նոր էտապը՝ սոցիալիստական հասարակության կառուցման ավարտման և աստիճանաբար կոմունիզմին անցման էտապը, երբ վճռական նշանակություն է ձեռք բերում կոմու-

նիստական դաստիարակությունը, կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը՝ մարդկանց գիտակցության մեջ։

## ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

«Մեծ նախաձեռնություն» բրոշյուրում Լենինը գնահատելով կոմունիստական շաբաթօրյակների նշանակությունը, գրել է.

«Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնազոհ, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքները, որոնք հասնում են ո՛չ թե անձնապես աշխատողներին և ո՛չ էլ նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը, տասնյակ և հարյուր միլիոնավոր մարդկանց, որոնք միացած են սկզբում մի սոցիալիստական պետության, հետո՝ Սովետական Ռեսպուբլիկաների Միության մեջ»։ (Վ. Ի. Լենին, «Մեծ նախաձեռնություն», էջ՝ 35, Պետհրատ։— 1938 թ. հայերեն. առանձին բրոշյուրով)։

Շարքային բանվորների, հասարակության շահերի այս անձնազոհ հոգատարության մեջ Լենինը տեսնում էր նորի բողբոջները—նոր հոգեբանության աճի, մարդկանց կոմունիս-



տական գիտակցության առաջին նշանները։ Լենինն ասում էր. «Այդ սկիզբն է մի հեղաշրջման, ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական, քան բուրժուազիայի տապալումը, որովհետև այդ հաղթությունն է սեփական անշարժության, սանձարձակության, մանրբուրժուական էգոիզմի վրա, այն սովորությունների վրա, որ անիծյալ կապիտալիզմը ժառանգություն է թողել բանվորին և գյուղացուն»։ (Նույն տեղ, էջ 4)։

Հեղաշրջումները մարդկանց գիտակցության մեջ կատարվում են ավելի դանդաղ, քան էկոնոմիկայում և քան քաղաքական հասարակարգում։ Նորը հաղթահարում է հինին, երկարատև և դժվարին պայքարում։ Սոցիալիզմի կառուցման պրոցեսի ընթացքում կատարվում էր մեր երկրի մարդկանց գիտակցության վերափոխումը։ Աճեցին նոր մարդիկ, նոր հայացքներով, նոր վերաբերմունքով՝ հանդեպ աշխատանքը, հասարակությունը։ Սակայն կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ դեռ մինչև այժմ էլ զգալի չափով կան։ Նրանք խանգարում են նորի կառուցմանը, դանդաղեցնում են մեր շարժումն առաջ։ Այդ մնացուկների դեմ մղվող պայքարում լենինյան ցուցմունքները, լենինյան պատգամները, որ-

պես ուղեցույց աստղ են ծառայում։

Լենինը մեզ սովորեցնում էր՝ համբերությամբ և համառությամբ՝ դաստիարակել մարդկանց, կոփել նոր մարդկանց, որոնք պատրաստ են «տալ իրենց աշխատանքը, իրենց ուժերն ընդհանուրի գործին»։

Լենինը մեզ պատգամ է թողել՝ աշխատել ազնվորեն, բարեխիղճ, պաշտպանել սոցիալիստական սեփականությունը— մեր բարեկեցության հիմքը— և անխնայորեն պայքարել ժուլիկների, հասարակական հարստության գողերի դեմ, ծրիակերների դեմ և զեղծարարների դեմ, աշխատանքի սոցիալիստական կարգապահության բոլոր խախտողների դեմ։ «Ամեն մի թուլություն, ամեն մի վարանում, ամեն մի սանտիմենտալ վերաբերմունք այդ տեսակետից՝ մեծագույն ոճրագործություն կլիներ սոցիալիզմի հանդեպ»։ (Վ. Ի. Լենին, Երկեր հատոր XXII, էջ 204, Պետհրատ, 1932 թ. հայերեն)։

Ձրիակերներին, լոդրներին, գռփողներին, խուլիգաններին Լենինը համարում էր նույնպիսի մակաբույծներ և բուրժուական հասարակության «տղեկներ», ինչպիսիք էին հարուստները։

Պայքարը նրանց դեմ՝ դա կապիտալիզմի դեմ մղվող մեր դասակարգային պայքարի մի մասն է։



Լենինն ասում էր. «Աշխատանքի արտադրողականությունը դա վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։ Կապիտալիզմն ստեղծեց ճորտատիրության օրով չըտեսնված աշխատանքի արտադրողականություն։ Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և կպարտվի վերջնականապես նրանով, որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր աշխատանքի արտադրողականություն»։ (Վ. Ի. Լենին, «Մեծ նախաձեռնություն», էջ 34, հայերեն, առանձին բրոշյուր)։

Սոցիալիզմի օրոք աշխատանքի արտադրողականությունը կարող է և պետք է լինի շատ ավելի բարձր, քան կապիտալիզմի օրոք։ Մեզ մոտ ժողովրդական տնտեսությունը տարվում է պլանային սիստեմով։ Մենք աշխատում ենք ոչ թե կապիտալիստ-տիրոջ համար, ոչ թե մի բուռն շահագործողների և ծրիակերների հարստացման համար, այլ մեզ համար, մեր ժողովրդի համար, հասարակության համար։ Աշխատանքը մեզ մոտ— դա պատվի և փառքի գործ է։

Սոցիալիզմի պայմաններում պայքարը հանուն աշխատանքի բարձր արտադրողականության, հանուն արտադրանքի բարձր որակի— դա ոչ-պակաս կարևոր, ոչ -պակաս

ազնիվ պայքար է, քան այն պայքարը, որը տարվում էր բարիկադների վրա, ընդհատակում, սովետների իշխանության համար մղվող քաղաքացիական պատերազմի ճակատներում։ Դա՝ կապիտալիզմի դեմ՝ հանուն կոմունիզմի համար մղվող մեր պայքարի շարունակությունն է։ Միաժամանակ դա պայքար է և հանուն մեզնից յուրաքանչյուրի բարեկեցության, հանուն մեր զավակների երջանիկ ապագայի, որը լիապես կախված է մեր հայրենիքի ամրապնդումից և բարգավաճումից։

Լենինը սովորեցնում էր աշխատել և հասնել աշխատանքի բարձր արտադրողականության, սոցիալիստական մրցակցության օգնությամբ։

Ինչո՞ւմն է կայանում սոցիալիստական մրցակցության էությունը։ Բացատրելով այդ, ընկեր Ստալինն ասում է.

«Սոցիալիստական մրցությունը ասում է. — ոմանք վատ են աշխատում, ոմանք՝ լավ, ոմանք էլ՝ ավելի լավ. **հասիր ամենալավերին** և ստեղծիր **ընդհանուր վերելք**»:

(«Ленин и Сталин о труде» стр. 443, Профиздат, 1940 г.)

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ սոցիալիստական մրցակցությունը դարձել է համաժողովրդական մի շարժում, որը բարձրա-



նալով նոր, ավելի բարձր աստիճանի վրա, ծնեցրել է հզոր ստախանովական շարժումը։

1940 թիվը հավերժացավ ստախանովական շարժման նոր հաղթանակներով, աշխատանքի սոցիալիստական արտադրողականության նոր աճով։ Հիանալի արդյունքներ տվեց ածխագործների, նավթագործների և մետաղագործների մրցակցությունը։ Ողջ երկիրն իմացավ այն մարդկանց անունները, որոնք դեռ մի տարի առաջ անհայտ էին, իսկ այժմ իրենց աշխատանքի հերոսությամբ փառաբանեցին մեր հայրենիքը — Սեմիվոլոսը, Շկարաբուրան, Կրավցովը, Սինյագովսկին և ուրիշները՝ արդյունաբերության մեջ, Կարպովը, Բագացկայան, Տիշինան, Լյուսկովան և ուրիշները՝ կոլխոզային հողագործության մեջ։

Երկրի ստախանովականները ցույց են տալիս բոլորին դեպի աշխատանքը գիտակից, կոմունիստական վերաբերմունք ցուցաբերելու օրինակներ, այդպիսով կատարելով Լենինի կարևորագույն պատգամներից մեկը։

Լենինը մեզ սովորեցնում էր նոր կոմունիստական բարոյականություն, որը լիովին համապատասխանում է հանուն կոմունիզմի համար մղվող պայքարի շահերին։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ այդ պայքարը պետք է գտնվի կոմունիստական դաստիարակության և կրթության հիմքում։

կրթությունը, կուլտուրականության աճը, Լենինը համարում էր կոմունիստական դաստիարակության անբաժանելի մասը, մեր առաջընթաց շարժման անհրաժեշտ պայմանը։

Լենինի երազները կուլտուրական ռևոլյուցիայի մասին, կուլտուրան լայն մասսաներում ընդհանրացնելու մասին, իրականացվում են կյանքում։ Զոհեցված պատմական կարճ ժամկետներում, հետամնաց, խավար, անգրագետ երկիրը դարձավ առաջավոր կուլտուրայի երկիր։ Համարյա բոլորովին վերացված է ազգաբնակչության անգրագիտությունը։ Ստեղծված է գրադարանների լայնածավալ ցանց։ Այժմ մեզ մոտ հաշվվում են 77,5 հազար մասսայական գրադարաններ, 160 միլիոն գրքային ֆոնդով։ 1939 թվի համամիութենական մարդահամարի տվյալներով մեզ մոտ, 13 միլիոն մարդուց ավելի՝ ունեն միջնակարգ կրթություն և մեկ միլիոն մարդուց ավելի՝ բարձրագույն կրթություն։ Հիրավի, զարմացուցի՞չ է Արևելքի և Հյուսիսի ժողովուրդների կուլտուրական աճը, որոնցից շատերը մինչև ռևոլյուցիան անգամ չունեին իրենց սեփական գիրը։

Մեծ են կուլտուրական ռևոլյուցիայի նվաճումները, կոմունիստական դաստիարակության հաջողությունները։ Սակայն, ոչ-պակաս մեծ են այն խնդիրները, որոնք ծառա-



ցած են մեր առջև և դեռ շատ դժվարություններ կան, որոնց պետք է մենք հաղթահարենք, որպեսզի մեր երկրի բոլոր քաղաքացիներին դարձնենք կոմունիստական հասարակության առաջավոր, գիտակից և ակտիվ կառուցողներ։

## ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

Լենինը մեզ պատգամ թողեց՝ ամրապնդել մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, ամրապնդել և ընդլայնել ՍՍՌՄ-ն։ Այս պատգամը սրբորեն կատարվում է ընկեր Ստալինի ղեկավարությամբ։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը վերածնեցրեց ցարիզմի կողմից շահագործվող, աղքատության և տգիտության մեջ տառապող ժողովուրդներին և հանեց նրանց քաղաքական վերելքի, իրավահավասարության, տնտեսական և կուլտուրական բարգավաճման ուղու վրա։

Ընկեր Ստալինը Տաջիկստանի և Թուրքմենստանի առաջավոր կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների խորհրդակցությանն ասաց. «...Մեծ Լենինը, մեր ուսուցիչը, մեր հայրը և դաստիարակն ասել է, որ չպետք է այլևս լինի ո՛չ տիրապետող, ո՛չ ենթարկվող ժողովուրդներ, որ ժողովուրդները պետք է

լինեն իրավահավասար և ազատ։

Լենինի այս պատգամը կատարվեց։ «ՍՍՌՄ ժողովուրդների միջև գտնվող նախկին անվստահությանը վաղուց արդեն վերջ է տրված... Անվստահությունը փոխարինվել է լիակատար փոխադարձ վստահությամբ։ Բարեկամությունը ՍՍՌՄ ժողովուրդների միջև աճում և ամրանում է։ Ո՛չ ոք մեզ այլևս սարսափելի չէ, ո՛չ ներքին, ո՛չ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է և բարգավաճում»։

Լենինի մահվան 17-րդ տարին հավերժացավ ՍՍՌՄ ժողովուրդների ընտանիքի է՛լ ավելի ամրապնդմամբ և լայնացմամբ. դեռ մի տարի առաջ, ՍՍՌՄ-ն միացնում էր 11 միութենական ռեսպուբլիկաներ, իսկ այժմ նրա կազմում արդեն կան 16 Միութենական ռեսպուբլիկաներ։

Սպիտակ ֆինների ջախջախման և սպիտակ-ֆիննական անտիսովետական պլացդարմի ոչընչացման հետևանքով, ՍՍՌՄ սահմաններն ընդարձակվեցին դեպի հյուսիս-արևմուտք։ Ստեղծվեց Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։ Լիտվան, Լատվիան, Էստոնիան դարձան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաներ։ Իր ժամանակին բռնի կերպով ռումինական բոյարների կողմից իր հայրենիքից անջատված



Բեսարաբիան վերադարձվեց Սովետական Միությանը։ Հարավում ստեղծվեց Մոլդավական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։ Հյուսիսային Բուկովինան—բուն ուկրաինական այդ երկիրը— միակցվեց Ուկրայինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկային։

Բոլոր նոր սովետական ռեսպուբլիկաներում և մարզերում բուռն տեմպերով կառուցվում է նոր կյանք ու ամրապնդվում է բոլոր աշխատավոր ազգությունների բարեկամությունը։

Նորերս Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում, Ուկրաինայի, Բելոռուսիայի արևմտյան մարզերում կատարված աշխատավորների դեպուտատների ընտրությունները տեղական սովետներում, հանդիսացան լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության նոր, փայլուն հաղթանակը։ Նրանք ցույց տվին նոր սովետական քաղաքացիների հավատարմությունն իրենց սոցիալիստական հայրենիքի և Լենին-Ստալինի պարտիայի հանդեպ։ Նրանք մի անգամ ևս ցուցադրեցին ողջ աշխարհի առաջ, ողջ սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը։

Նոր սովետական ռեսպուբլիկաների և մարզերի աշխատավորների օրինակից վառ

լինեն իրավահավասար և ազատ»:

Լենինի այս պատգամը կատարվեց: «ՍՍՌՄ ժողովուրդների միջև գտնվող նախկին անվստահությանը վաղուց արդեն վերջ է տրված... Անվստահությունը փոխարինվել է լիակատար փոխադարձ վստահությամբ: Բարեկամությունը ՍՍՌՄ ժողովուրդների միջև աճում և ամրանում է: Ո՛չ ոք մեզ այլևս սարսափելի չէ, ո՛չ ներքին, ո՛չ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է և բարգավաճում»:

Լենինի մահվան 17-րդ տարին հավերժացավ ՍՍՌՄ ժողովուրդների ընտանիքի է՛լ ավելի ամրապնդմամբ և լայնացմամբ. դեռ մի տարի առաջ, ՍՍՌՄ-ն միացնում էր 11 միութենական ռեսպուբլիկաներ, իսկ այժմ նրա կազմում արդեն կան 16 Միութենական ռեսպուբլիկաներ:

Սպիտակ ֆինների ջախջախման և սպիտակֆիննական անտիսովետական պլացդարմի ոչնչացման հետևանքով, ՍՍՌՄ սահմանները ընդարձակվեցին դեպի հյուսիս-արևմուտք: Ստեղծվեց Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան: Լիտվան, Լատվիան, Էստոնիան դարձան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաներ: Իր ժամանակին բռնի կերպով ռումինական բոյարների կողմից իր հայրենիքից անջատված



Բեսարաբիան վերադարձվեց Սովետական Միությանը: Հարավում ստեղծվեց Մոլդավական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան: Հյուսիսային Բուկովինան—բուն ուկրաինական այդ երկիրը— միակցվեց Ուկրայինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկային:

Բոլոր նոր սովետական ռեսպուբլիկաներում և մարզերում բուռն տեմպերով կառուցվում է նոր կյանք ու ամրապնդվում է բոլոր աշխատավոր ազգությունների բարեկամությունը:

Նորերս Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում, Ուկրաինայի, Բելոռուսիայի արևմտյան մարզերում կատարված աշխատավորների դեպուտատների ընտրությունները տեղական սովետներում, հանդիսացան լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության նոր, փայլուն հաղթանակը: Նրանք ցույց տվին նոր սովետական քաղաքացիների հավատարմությունն իրենց սոցիալիստական հայրենիքի և Լենինի-Ստալինի պարտիայի հանդեպ: Նրանք մի անգամ ևս ցուցադրեցին ողջ աշխարհի առաջ, ողջ սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը:

Նոր սովետական ռեսպուբլիկաների և մարզերի աշխատավորների օրինակից վառ

կերպով տեսանելի է, թե ինչպիսի ձգողական ուժ ունեն Լենինի-Ստալինի գաղափարները, կոմունիզմի և սովետական իշխանության գաղափարները։ Այդ գաղափարները փշրելով արհեստական խոչնդոտները, հաղթահարելով սահմանները և արգելակները, թափանցում են կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաների սիրտն ու գիտակցությունը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1940 թ. օգոստոսին կայացած 7-րդ սեսիային, Լիտվական ժողովրդի պատվիրակ, բանվոր՝ Պրանաս Զիբերտասը, որին կապիտալիստական դահիճները 20 տարի պահել էին բանտի պատերում, պատմեց, թե ինչպես նրան և մյուս բանտարկյալներին ոգեշնչում էր այն հավատը որ՝ «վաղ թե ուշ մեր ժողովուրդը, Լիտվայում, մեծ Սովետական Միության օգնությամբ և օժանդակությամբ, ձեռք կբերի իր ազատությունը»։

Նա ասաց. «Բանտում, ճիշտ է, հազվադեպ, սակայն այնուամենայնիվ, մենք ունեինք երբեմն պայծառ րոպեներ։ Դա այն րոպեներն էին, երբ մենք մեծ զգուշությամբ, բանտապահներից գաղտնի, կարդում էինք արգելված սովետական գրքերն ու թերթերը։ Մենք, այն ժամանակ մեծագույն ագահությամբ որսում էինք յուրաքանչյուր բառ Լե-



նինի մասին, Ստալինի մասին, սովետական սահմաններից այն կողմը գտնվող երջանիկ և ազատ կյանքի մասին»։

Սրբորեն պահպանելով Լենինի պատգամը՝ Կոմունիստական Ինտերնացիոնալի սկզբունքներին հավատարիմ մնալու մասին, Սովետական Միության ժողովուրդներն ամրապնդում են կապիտալիստական երկրների աշխատավորների հետ ունեցած իրենց եղբայրական կապերը և համերաշխորեն պայքարում են հանուն ՍՍՌՄ-ի — բոլոր երկրների աշխատավորների հայրենիքի — տնտեսական և պաշտպանական հզորության ուժեղացման համար։

Մենք երբեք չենք մոռանա, որ մեր հաղթանակները ձեռք են բերված միջազգային պրոլետարիատի օգնությամբ։ Մենք գիտենք, որ ՍՍՌՄ-ն հանդիսանում է միջազգային պրոլետարիատի հարվածային բրիգադան և սոցիալիզմի յուրաքանչյուր հաղթանակը, մեր յուրաքանչյուր նոր հաջողությունը՝ նոր ուժեր է ավելացնում կապիտալիզմի դեմ ողջ աշխարհում պայքարող պրոլետարիատի շարքերում։

## ԼԻՆԵԼ ՊԱՏՐԱՍՏ ԵՎ ԶԳՈՒՅՇ

Մեր երկիրն ապրում և պայքարում է կապիտալիստական շրջապատման մեջ, որի վտանգների մասին Լենինը միշտ [illegible]

է պարտիայի՛ն, բանվոր դասակարգի՛ն։

1921 թվին երբ մեր ժողովուրդը ջարդելով սպիտակ գվարդիականներին և ինտերվենտներին, հաջող կերպով ավարտեց քաղաքացիական պատերազմը և անցավ խաղաղ ստեղծագործական սոցիալիստական աշխատանքի, Լենինն ասում էր.

«...Ձեռք զարկելով մեր խաղաղ շինարարությանը՝ մենք բոլոր ուժերը գործ կդնենք այն առանց ընդհատումների շարունակելու համար։ Միևնույն ժամանակ, ընկերնե՛ր, պատրաստ և զգույշ եղե՛ք, պահպանեցեք մեր երկրի և մեր Կարմիր Բանակի մարտունակությունը, ինչպես ձեր աչքի լույսը»։ (Վ. Ի. Լենին, Երկեր հատոր XXVII, էջ, 154—155. Պետհրատ, Երևան, 1932 թ. հայերեն)։

Ընկեր Ստալինը Լենինի դագաղի մոտ երդվեց՝ չխնայելով ուժերը, ամրապնդել Կարմիր Բանակը և Կարմիր Նավատորմը, որոնք պահապան են կանգնած սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործական աշխատանքին։ Հզոր, սոցիալիստական ինդուստրիայի ստեղծումը հնարավորություն տվեց սովետական պետության զինված ուժերին, մատակարարել պաշտպանության և հարձակման բոլոր անհրաժեշտ զենքերով։

Ընկեր Ստալինն օրեցօր և անձամբ հետևում է որպեսզի Կարմիր Բանակը և Կար-



միր Նավատորմիղը մասսայական քանակով կատարելագործված զենքեր ստանան, որպեսզի սոցիալիզմի երկրի զինված ուժերը լինեն ամենահզորն աշխարհում, որպեսզի Կարմիր Բանակի և Կարմիր Նավատորմի մարտիկները և հրամանատարները լինեն ամենագիտունները, քաջերը, գործին հմուտները։

Կարմիր Բանակի զենքը, մարտական վարժվածությունը, նրա անձնակազմի քաջությունը և հայրենասիրությունը փորձված են հանուն հայրենիքի համար մղված մարտերում՝ Խասան լճի մոտ, Խալխին-Գոլ գետի մոտ, Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ազատագրական արշավանքի ընթացքում և հատկապես սպիտակ-ֆինների դեմ մղված պատերազմում։ Ի՞նչ եղավ «անառիկ» «Մաններհեյմի գիծը», որը կառուցվել էր խոշոր իմպերիալիստական պետությունների ուժերով։ Ի՞նչ եղավ սպիտակ-ֆիննական բանակը, որին սովորեցրել էին, զինել էին և պատրաստել էին ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու համար նույն իմպերիալիստական պետությունները։ Դրանք ոչնչացվեցին։ Եվ ողջ աշխարհը տեսավ Կարմիր Բանակի ու Ռազմածովային Նավատորմի ուժն ու հզորությունը, դաժան ձմեռվա ծանր պայմաններում կռվող մար-

տիկների և հրամանատարների քաջությունը, տոկունությունը, հերոսությունը։ Ողջ աշխարհը տեսավ, թե ինչպիսի հիանալի թռնդանոթներ, ինքնաթիռներ, տանկեր, գնդացիրներ և այլ զենքեր կարող է տալ բանվոր դասակարգն իր բանակին և իր նավատորմղին։ ՍՍՌՄ-ի թշնամիներն իրենց սեփական փորձով համոզվեցին, որ սովետական երկիրը կարող է պաշտպանել իր շահերը։

Կանգնած է Սովետական Միությունն, արդեն երեք աշխարհամասերը ընդգրկած (Եվրոպան, Ասիան, Աֆրիկան) երկրորդ իմպերիալիստական պատերազմի մոլեգնած բոցերում, որպես մի անառիկ ամրոց։

Յուրաքանչյուր գիտակից մարդ հասկանում է, որ քիչ է լոկ բարի կամքը՝ պատերազմում չներքաշվելու խնդրում։ Անհրաժեշտ է նաև ուժ։ Հենց այն պատճառով, որ մեր երկիրը Լենինի պատգամներից ելնելով, Ստալինի առաջնորդությամբ՝ դարձել է հզոր, ինդուստրիալ երկիր, որն ընդունակ է զինել իր բանակը և նավատորմիղն ամենավերջին կատարելագործված մարտական տեխնիկայով, հենց շնորհիվ իր ուժի և մոբիլիզացիոն պատրաստականության, Սովետական Միությունը կարողանում է վարել ինք նուրույն արտաքին քաղաքականություն, որի



հետ ստիպված է կապիտալիստական աշխարհը հաշվի նստել։

Մեր երկրի ինդուստրիալ հզորության ուժեղացման, նրա մոբիլիզացիոն պատրաստականության հարցը մշտապես գտնվում է բոլշևիկների պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի և անձնապես ընկեր Ստալինի ուշադրության կենտրոնում։

1941 թ. փետրվարի 15-ին կայանալիք, Կենտրոնական Կոմիտեի կողմից հրավիրված, ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսի օրակարգի առաջին և գլխավոր հարցը հանդիսանում է արդյունաբերության և տրանսպորտի ասպարեզում կատարվելիք պարտիական կազմակերպությունների աշխատանքի հարցը։ Պարտկազմակերպության՝ յուրաքանչյուր գործարանում, հանքում կամ տրանսպորտում տարվելիք մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակից, նրա՝ մասսաները ոգեշնչելու, նրանց՝ աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարի շուրջը համախմբելու կարողությունից կախված է երրորդ ստալինյան հնգամյակի կատարումը, կախված է մեր երկրի հզորության և նրա պաշտպանունակության հետագա աճը։

ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսի հրավիրելու հաղորդագրությունն առաջացրեց աշխատավորների մեջ արտադրական նոր վերելք։ Բանվորների, ծառայողների, ինժեներների, տեխնիկների բազմահազար կոլեկտիվները մտնելով 18-րդ պարտկոնֆերանսի անվան սոցիալիստական մրցության մեջ, ձեռք են բերում նորանոր արտադրական հաղթանակներ։

Միջազգային դրությունը բարդ է և խճճված։ Պատերազմի վտանգն սպառնում է նաև մեր երկրին։ Ահա թե ինչո՞ւ սոցիալիստական ռևոլյուցիայի ճակատագրի համար պատասխանատու ՍՍՌՄ բանվոր դասակարգը 1940 թվին ցանկացավ բանվորական օրը հասցնել 8 ժամվա, իսկ բանվորական շաբաթը՝ 7 օրվա։ Հայրենիքի շահերը, պետության շահերը— դրանք ժողովրդի շահերն են։ Մեզ անհրաժեշտ է է՛լ ավելի շատ մետաղ, ածուխ, նավթ, դազգահներ, ավտոմոբիլներ, ինքնաթիռներ, ռազմական նավեր, արկեր, լայն սպառման ապրանքներ. անհրաժեշտ է, որպեսզի էլ ավելի աճի մեր երկրի տնտեսական և պաշտպանական հզորությունը, իսկ դրա համար պահանջվում է աշխատել է՛լ ավելի արտադրողաբար, պահպանել աշխատանքային կարգապահությունը և կարգը, հոգ տանել սովետական յուրաքանչյուր գր-



ամ հարստությանը, ինչպես մեզ սովորեցնում էր Լենինը։ Անհրաժեշտ է անձնազոհություն, անհրաժեշտ է զոհեր անելու պատրաստակամություն։

Լենինի-Ստալինի պարտիայի կողմից դաստիարակված, քաղաքացիական պատերազմներում և սոցիալիզմի կառուցման պայքարի ճակատներում կոփված սովետական ժողովուրդը մի անգամ չէ, որ ապացուցել է իր գիտակցականությունը և կազմակերպվածությունը, իր հերոսությունը և անսահման հավատարմությունը՝ սոցիալիստական հայրենիքի հանդեպ։ Նա կարող է այդ ապացուցել և այժմ։

Այժմ ավելի քան երբևիցե պահանջվում է մեզանից կազմակերպվածություն, հավաքվածություն, լարվածություն, զգոնություն, պատրաստակամություն՝ յուրաքանչյուր անսպասելիությանը դիմավորելու և յուրաքանչյուր թշնամուն անմիջականորեն ջախջախիչ հակահարված հասցնելու գործում։ Հատուկ ուժով են հնչում այժմ Լենինի խոսքերը. «Եղե՛ք պատրաստ և զգույշ»։

«Մենք գտնվում ենք պաշարված ամրոցում։ Ճիշտ է, այդ ամրոցը հսկայական է— աշխարհի մեկ վեցերորդական մասն է կազմում։ Սակայն, մնացած հինգ վեցերորդականը՝ մեր սկզբունքային, ոխերիմ թշնամի-

*ներն են... Կապիտալիստական շրջապատման առկայությունը և այժմյան միջազգային պայմանները պարտավորեցնում են մեզ զարգացնել սովետական քաղաքացիների ինքնապաշտպանման զգացմունքը և ուժեղացնել նրանց մոբիլիզացիոն պատրաստականությունը։ Բոլոր նրանք, ում համար թանկ է կոմունիզմը, որպես հասարակական սիստեմ, որի հիման վրա ցանկանում են նրանք ապրել, պետք է այդ սիստեմն ամրապնդեն, պետք է պայքարեն նրա համար» (Կալինին):*

*Հենց այս ամենավիթխարի և ազնվագույն պայքարը՝ մարդկության պատմության մեջ, հանդիսանում է Լենինի պատգամների ամենագործնական կատարումը։ Այս պայքարը, որին ղեկավարում է Լենինի գործի մեծ շարունակողը՝ ընկեր Ստալինը, մեզ հանգեցրեց սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակներին և հենց նա մեզ կհանգեցնի կոմունիզմի լիակատար և վերջնական հաղթանակին։*

---



# ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

Վլադիմիր Իլիչի մահից անցած 17 տարիների ընթացքում հրատարակված են հազարավոր հիշողություններ այն մարդկանց կողմից, որոնք հանդիպել են Լենինին, զրուցել են նրա հետ, լսել են նրա խոսքերը, աշխատել են նրա հետ միասին: Այդ հիշողությունները տպագրվել են զանազան թերթերում, ժուռնալներում, ժողովածուներում, որոնց մեծ մասն արդեն դարձել է մատենագրական հազվագյուտ նյութ, իսկ այդ հիշողությունների նշանակությունը հսկայական է, որովհետև նրանք նկարագծում են մեծ Լենինի կերպարը: Ագիտատորի համար այդ հիշողությունները հանդիսանում են հիանալի լուսաբանություն Լենինի մասին կարդացվող զեկուցումների, դասախոսությունների, զրույցների ժամանակ և գեղեցիկ նյութ ընթերցումների համար: Մենք այստեղ տալիս ենք մոնտաժ հիշողություն-

ներից և այլ նյութերից, որոնք նկարագծում են աշխատավոր մարդկության մեծ առաջնորդի դեմքը:

***

«Ընտրողները, ժողովուրդը պետք է պահանջեն իրենց դեպուտատներից, որ նրանք մնան իրենց խնդիրների բարձրության վրա, որ նրանք իրենց աշխատանքում չիջնեն մինչև քաղաքական քաղքենիների մակարդակը, որ նրանք մնան լենինյան տիպի քաղաքական գործիչների պոստում, որ նրանք լինեն այնպիսի պայծառ ու որոշ գործիչներ, ինչպես Լենինն էր, որ նրանք լինեն այնպես աներկյուղ՝ կռվի մեջ և անողոք դեպի ժողովրդի թշնամիները, ինչպես Լենինն էր, որ նրանք ազատ լինեն ամեն տեսակի խուճապից, խուճապը հիշեցնող բանից, երբ գործն սկսում է բարդանալ և հորիզոնի վրա երևում է որևէ վտանգ, որ նրանք նույնպես ազատ լինեն խուճապի նմանվող ամեն մի բանից, ինչպես ազատ էր Լենինը, որ նրանք լինեն նույնպես իմաստուն և չշտապող բարդ հարցեր վճռելիս, որտեղ հարկավոր է բազմակողմանի կողմնորոշում և բազմակողմանի հաշվառում բոլոր պլյուսների և մինուսների, ինչպես Լենինն էր, որ նրանք լինեն նույնպես



ճշմարտացի և ազնիվ, ինչպես Լենինն էր, որ նրանք նույնպես սիրեն իրենց ժողովրդին, ինչպես սիրում էր նրան Լենինը»:

(Ի. Ստալին)

## ՀԱՆՃԱՐԵՂ ԱՌԱՋՆՈՐԴԸ

«Լենինը ծնված էր ռևոլյուցիայի համար: Նա հիրավի ռևոլյուցիոն պայթյունների հանճարն էր և ռևոլյուցիոն ղեկավարության մեծագույն վարպետը:...Ռևոլյուցիոն շրջադարձերի օրերին նա բառի բուն նշանակությամբ փթթում էր, դառնում էր պայծառատես, կռահում էր դասակարգերի շարժումը և ռևոլյուցիայի հավանական զիգզագները, տեսնելով նրանց, ինչպես իր ափի մեջ: Իզուր չեն ասում մեր պարտիական շրջաններում, թե «Իլյիչը կարողանում է լողալ ռևոլյուցիայի ալիքների մեջ, ինչպես ձուկը ջրում»:

Այստեղից են Լենինի տակտիկական լոզունգների «զարմանալի» պարզությունը և ռևոլյուցիոն մտահղացումների «գլխապտույտային» համարձակությունը»:

(Ի. Ստալին)

«Նա հարյուրավոր նահանգ էր

Իր դամբանում շրջում,

Կրում էր նա

մարդկանց

մինչ մեկուկես միլիարդ։

Նա

կշռեց

աշխարհը —

Հենց մեկ իսկ գիշերում —

Իսկ առավոտը.

— Բոլորի՛ն,

բոլորի՛ն...

Բոլոր այդ

ֆրոնտներին

արյունով արբած՝



ստրուկներին՝

բոլոր տեսակների —

որ

ստրկության են տրված

Հարուստներին։

Իշխանությո՛ւնը սովետների՛ն։

Հողը գյուղացո՛ւն։

Հա՛ցը քաղցածներին,

Խաղաղությունը ժողովրդին»։

( Վ. Մայակովսկի)

«Ես տեսել եմ Լենինին մի անգամ միայն, Կրեմլում, Կոմինտերնի կոնգրեսի ժամանակ, 1922 թվի աշնանը։

... Լենինի միտքը հոսում էր, պարզ ու թափանցիկ, և այն ժամանակ, երբ նա շո-

շափում էր մարդկության մեծագույն պրոբլեմները և ցույց էր տալիս ամենքի համար պարզորոշ, թե ապագան անխուսափելիորեն և հաստատապես զարգանում է ներկայից։ Թվում էր, նա ապրում էր բոլոր մարդկային կյանքերով։ Նա գիտեր բոլոր երկրների դրությունը, չքավորների վիճակը և յուրաքանչյուր երկրում կիրառվող շահագործման մեթոդները։ Եվ նա ցույց էր տալիս մեզ, թե ինչպես են զարգացել այդ մեթոդները ընդհուպ մինչև ներկա ժամանակը։ Դա գիտություն էր, բայց բոլորովին առանձին և նոր. նրանից գրքի հոտ չէր փչում, այլ նա ինքը կյանքն էր, նա լուսաբանում էր և՛ արդյունաբերական բանվորի, և՛ կուլիի, և՛ կար անող կնոջ, և՛ փողոցն ավլողի դրությունը։ Մարդկության պատմությունը, ինքը՝ մարդկային կուլտուրայի պատմությունը կանգնում էին մեր առաջ Լենինի խոսքերից։

«Ահա՛ իսկական մարդ,— շշնջաց ականջիս նորվեգիացի բանվորը։— Եվ ինչպես նման է նա մեզանից ամեն մեկին, միայն հազարապատիկ սրատես է նա»։

(Մարտին Անդերսեն Նեկսե).

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՏՐԻԲՈՒՆԸ...

«Համոզմունքի արտասովոր ուժ, արգու-



մենտացիայի պարզություն և հստակություն, կարճ և ամենքին հասկանալի ֆրազներ, կոտրատվելու բացակայություն, գլխապտույտային շարժումների և էֆեկտավոր ֆրազների բացակայություն, որոնք ուզում են տպավորություն գործել,— այդ ամենը հօգուտ Լենինի տարբերում էր նրա ճառերը սովորական «պարլամենտական» հռետորների ճառերից։

Սակայն ինձ հմայում էր այն ժամանակ Լենինի ճառերի ոչ այդ հատկությունը։ Ինձ հմայում էր Լենինի ճառերի մեջ տրամաբանության այն անհաղթելի ուժը, որը մի քիչ չոր է, բայց դրա փոխարեն տիրում է աուդիտորիային, աստիճանաբար էլեկտրականացնում է նրան և ապա գերում է, ինչպես ասում են, առանց մնացորդի։ Ես հիշում եմ, թե ինչպես էին խոսում այն ժամանակ դելեգատներից շատերը... Լոգիկան Լենինի ճառերում մի ինչ-որ ամենակարող շոշափուկներ են, որոնք ամեն կողմից բռնում են քեզ աքցաններով և որոնց գրկից ուժ չկա դուրս պրծնելու. կամ անձնատուր եղիր, կամ վճռիր կատարելապես տապալվել»։ (Ի. Ստալին)

«Բայց ահա, շտապ կերպով ամբիոն բարձրացավ Վլադիմիր Իլիչը, թվաս ար-

տասանելով «ընկերնե՛ր»։ Ինձ թվաց, որ նա վատ է խոսում, բայց մի րոպեից հետո արդեն ես, ինչպես և ամենքը, «կլանված» էինք նրա ճառով։ Առաջին անգամն էի լսում ես, որ քաղաքականության ամենաբարդ հարցերի մասին կարելի է խոսել այդպես պարզ։ Նա չէր փորձում հորինել գեղեցիկ ֆրազներ, այլ յուրաքանչյուր խոսքը մատուցում էր ափի վրա դրած, զարմանալի հեշտությամբ բաց անելով նրա իսկական իմաստը։ Շատ դժվար է տալ այն արտասովոր տպավորությունը, որ նա թողել էր։

Նրա ձեռքը, առաջ պարզած և մի քիչ վեր բարձրացրած, նրա ափը, որը կարծես կշռում էր յուրաքանչյուր խոսքը, մաղելով հակառակորդների ֆրազները, փոխարինելով նրանց ծանրակշիռ դրույթներով, բանվոր դասակարգի իրավունքի և պարտականության ապացույցներով՝ գնալ իր ճանապարհով, այլ ոչ թե լիբերալ բուրժուազիայի հետևից և նույնիսկ նրա հետ միասին,— այդ ամենն անսովոր էր և կարծես Լենինը խոսում էր ոչ թե իրենից, այլ, իսկապես, պատմության կամքով։ Նրա ճառի ձուլվածությունը, ամբողջությունը, շիտակությունը և ուժը, նա ինքն իր էությամբ ամ



թռնի վրա,— կարծես կլասիկ արվեստի մի արտադրություն լիներ. կա ամեն ինչ և չկա ոչ մի ավելորդ բան, ոչ մի զարդարանք, իսկ եթե կային,— նրանք չէին երևում, նրանք նույնչափ բնականորեն անհրաժեշտ են, ինչպես երկու աչքը դեմքի վրա, հինգ մատները ձեռքի վրա»։

(Մ. Գորկի)։

«Մի բանվոր գիտեր։
Անգրագետ էր նա։
Չէր ծամել
այն անգամ
այբուբենի։
Բայց նա լսել էր,
թե ինչպես է
Լենինը
խոսել

ու նա
տեղյակ էր
ամենինը»։

(Վ. Մայակովսկի)

## ՊԱՐԶ, ՀԱՄԵՍՏ, ԱՆՁՆՎԵՐ...

«Առաջին անգամ ես հանդիպեցի Լենինին 1905 թ. դեկտեմբերին, Տամերֆորսում (Ֆինլանդիա), բոլշևիկների կոնֆերանսում... Ընդունված է, որ սովորաբար «մեծ մար-

դիկ» ուշանում են ժողովին, որպեսզի ժողովի անդամները հոգնատանջ սրտով սպասեն նրա գալուն, ըստ որում, մեծ մարդու հայտնվելուց առաջ ժողովի անդամները նախազգուշացնում են. «սս... կամա՛ց... նա գալիս է»։ Այդ ծիսակատարությունն ինձ ավելորդ չէր թվում, որովհետև նա տպավորություն է թողնում, հարգանք է ներշնչում։ Ինչքան էր իմ հիասթափությունը, երբ իմացա, որ Լենինը ժողով էր եկել դելեգատներից առաջ և, մի անկյուն քաշված, պարզորեն զրուցում է, զրուցում է ամենասովորական եղանակով կոնֆերանսի ամենասովորական դելեգատների հետ։ Չեմ ծածկի, որ այդ բանն այն ժամանակ ինձ թվաց մի քանի անհրաժեշտ կանոնների որոշ խախտում։

Միայն հետագայում ես հասկացա, որ Լենինի այդ պարզությունն ու համեստությունը, նրա այդ ցանկությունը՝ մնալ աննկատելի, կամ, համենայն դեպս, աչքի չզարնվել և չընդգծել իր բարձր դիրքը,— այդ գիծը հանդիսանում է Լենինի ամենաուժեղ կողմերից մեկը, որպես նոր մասսաների, մարդկության խորագույն «ստորին խավերի» պարզ ու սովորական մասսաների նոր առաջնորդի»։

(Ի. Ստալին)



«Նա՝

Ինչպես և դուք և ես —

Ճիշտ այդպիսին էր նա.

Միայն թե՝

թերևս,

Հենց աչքերին մոտիկ

Մաշկն իր

մտքերով

ավելի էր կնճռակալ.

Շուրթերն էլ մերինից

ծաղրոտ

ու պինդ»։

(Վ. Մայակովսկի)

«18 թվականի աշնանը ես հարց տվի Սոր-

մովի բանվոր Դմիտրիչ Պավլովին, թե նրա կարծիքով, ո՞րն է Լենինի ամենաաչքի ընկնող գիծը:

—Պարզությունը: Պարզ է ինչպես ճշմարտությունը:

Նա այդ ասաց, որպես լավ մտածված, վաղուց վճռված բան»: (Մ. Գորկի)

«Խորին ազնվությունն ու համեստությունը թելադրում էին Վլադիմիր Իլյիչին, օրինակ այնպիսի պատասխաններ անկետայի հարցերին, որոնք կարդացվում են մեծ հետաքրքրությամբ և մի ինչ-որ հմայիչ զարմանքով:

1921 թվի մարտին, ՌԿ(բ)Պ 10-րդ համագումարի դելեգատի անկետայում այն հարցին, թե «ինչ լեզուներ (բացի ռուսերենից) գիտեք և որքան լավ», Վ. Ի. Լենինը պատասխանում է. «Անգլերեն, գերմաներեն, ֆրանսերեն՝ վատ, իտալերեն՝ շատ վատ»: Մինչդեռ հայտնի է, որ Լենինն ուսումնասիրում էր օտար լեզուները պատանեկական հասակից, ազատ տիրապետում էր նրանց և նույնիսկ ելույթներ է ունեցել օտար լեզուներով (օրինակ, գերմաներեն՝ Կոմինտերնի 4-րդ կոնգրեսում): Նույն անկետայի այն հարցին, թե ի՞նչն է եղել նրա հիմնական զբաղմունքը մինչև 1917 թվականը, Լե-



նինը, բոլշևիկների պարտիայի հիմնադիրն ու ամենքի կողմից նրա ճանաչված ղեկավարը, պատասխանում է. «գրականագետ»: ՌԿ(բ)Պ-ի Մոսկվայի կազմակերպության անդամների վերացուցակագրման անկետայում 1920 թվի սեպտեմբերին (ցուցադրված է Լենինի թանգարանում) այն հարցին, թե «ինչո՞ւմն է արտահայտվել ձեր մասնակցությունը փետրվարյան ռևոլյուցիայի մեջ», Լենինը պատասխանում է. բացի համապարտիական աշխատանքից, ոչ մի բանում (էմիգրացիայում)»: (Լ. Ֆոտիևա)

«Մի անգամ Վլադիմիր Իլյիչին տեղեկանքների համար շտապ հարկավոր եղան հունարեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն և ռուսերեն բառարաններ: Լենինը դիմեց Ռումյանցևի անվան թանգարանին, խնդրելով տալ իրեն այդ գրքերը, ըստ որում նշելով՝ «մի օրով»: «Եթե,— ավելացրել է Իլյիչը հենց այդտեղ,— ըստ կանոնների տեղեկանքային հրատարակությունները տուն չեն տրվում, ապա չի՞ կարելի արդյոք ստանալ մի երեկոյան, մի գիշերվա համար, երբ գրադարանը փակ է լինում: Կվերադարձնեմ առավոտյան դեմ»: Վերջին խոսքը Լենինն ընդգծել է չորս անգամ»: (Վլադիմիր Իլյիչի գրությունները. ՏԱՍՍ):

«Լենինն ապրում էր Կրեմլում... Նրա մասնավոր բնակարանն աչքի էր ընկնում ծայրահեղ պարզությամբ և համեստությամբ։ Ինձ պատահել է հաճախ լինել բանվորների բնակարաններում, որոնք ավելի հարուստ էին կահավորված, քան «Մոսկվայի ամենազոր դիկտատորի» բնակարանը...

Ինչպես հայտնի է, գյուղացիները առատորեն բերում էին՝ «իրենց Իլիչին» սպիտակ ալյուր, ճարպ, ձու, մրգեր և այլն. հայտնի է նույնպես, որ այդ ամենից ոչինչ չէր մնում Իլիչի տանը։ Բոլորն ուղարկվում էին հիվանդանոցները և մանկատները, որովհետև Լենինի ընտանիքը խստորեն հետևում էր այն սկզբունքին, թե պետք է ապրել նույն պայմաններում, որոնց մեջ ապրում են աշխատավոր մասսաները»։

(Կլարա Ցետկին):

«Մտածում էի ես հաց տասնհինգ մարդու համար, մի քառորդ ֆունտ ամեն մեկին։ Ինձ սխալմամբ տվին հաց քսանհինգ մարդու համար։ Ես այդ նկատեցի, բայց մտածեցի. «Ոչինչ, մեզ հարկավոր է»։ Ես հիշեցի Վլադիմիր Իլիչի մասին—նա աշխատում է օր ու գիշեր, բայց համարյա ոչինչ չի ուտում։ Մատուցում եմ թեյ և հաց՝ սովորականից ավելի և դանդաղում եմ, չեմ հեռա-



նում։ Մտածում եմ, գովելու է ինձ։ Վլադիմիր Իլիչը ուշադրություն դարձրեց հացի վրա և լրագիրը աչքի անցկացնելուց հետո դարձավ դեպի ինձ.

— Ընկեր Վորոնցովա, ի՞նչու եք շատ հաց տվել։ Երեկ ելի նույնն է, մի քառորդական ֆունտ։ Ո՞րտեղից էք վերցրել։

Նա այնպես նայեց ինձ, որ խաբել չէի կարող։ Ես ասացի, որ հաց տվող աղջիկը սխալվել է։

— Դուք մի անհանգստացեք,— ասում եմ,— նրանք հաց շատ ունեն, բոլոր դարակները լիքն են։ Կերե՛ք։

— Դուք կարծում եք, ընկեր Վորոնցովա,— ասաց Վլադիմիր Իլիչը— որ նրանց համար միայն մե՞նք ենք և նրանք, որոնց մասին դուք հոգում էք։

Եվ նա կտրեց ավելորդ հացը։

— Տարեք և այլևս չանեք այդպիսի բան։»

(Ն. Ն. Վորոնցովա):

«Կուրսանտների հետ միասին Իլիչը մասնակցել էր 1920 թվի մայիսի 1-ին Մայիսմեկյան շաբաթօրյակին Կրեմլում։ Բանն այսպես եղավ։ Կուրսանտները առավոտյան մոտավորապես ժամի 8-ին շարվեցին ժողկոմսովետի շենքի մոտ։ Մենք պետք է մաքրեինք և օրինակելի կարգի բերեինք Կրեմ

լի հրապարակը։ Լենինը դուրս եկավ ամենքի համար անսպասելի կերպով և ուղղակի դիմեց մեր կողմը։ Բարևելով կուրսանտներին, նա անցավ մեր աջ թևը և կանգնեց շարքում։ Ըստ որում Լենինն ասաց, դառնալով կուրսերի պետին.

— Գտնվում եմ ձեր տրամադրության տակ։ Խնդրում եմ հաշվի առնել ինձ։

Մենք ուղղվեցինք դեպի հրապարակը։ Այստեղ ամբողջ զորախումբը բաժանվեց 5-ական հոգուց բաղկացած խմբերի։ Ես ընկա Լենինի հետ միևնույն խմբի մեջ։ Սկսեցինք գերաններ կրել։ Երկյուղ կրելով նրա առողջության մասին, մենք խնդրեցինք նրան ծանրություններ չկրել, սակայն ներկա դեպքում անկարելի էր համոզել Լենինին։ Նա մեզ հետ հավասար գերաններ էր կրում....

Աշխատում էինք մենք երկար։ Իլիչը չէր հոգնում և շարունակ կրկնում էր.

— Շատ լավ եմ զգում ինձ։

Եվ միայն այն ժամանակ, երբ ամեն ինչ վերջացած էր, նա հրաժեշտ տվեց մեզ և գնաց» (Գ. Անտոնով)

## ՍԿԶԲՈՒՆՔԱՅԻՆ, ԱՆՀԱՇՏ...

«Եղել են մոմենտներ մեր պարտիայի պատմության մեջ, երբ մեծամասնության



կարծիքը կամ պարտիայի րոպեական շահերը կոնֆլիկտի մեջ էին մտնում պրոլետարիատի հիմնական շահերի հետ։ Այդպիսի դեպքերում Լենինը, առանց մտածելու, վճռականորեն անցնում էր սկզբունքայնության կողմը՝ պարտիայի մեծամասնության դեմ։ Ավելին — նա չէր վախենում այդպիսի դեպքերում հանդես գալ բառի բուն նշանակությամբ միայնակ բոլորի դեմ, հուսալով այն բանի վրա, որ — ինչպես հաճախ ինքն էր ասում այդ մասին, — «սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։» (Ի. Ստալին)

«Իլիչը... կարողանում էր լինել անողոք, երբ այդ պահանջում էին պարտիայի շահերը։

Այդ 1920 թվի ապրիլին էր, Պրոֆմիությունների 3-րդ Համառուսական Համագումարի ժամանակ։ Տոմսկին ցույց տվեց զզվելի երկերեսանություն, աշխատելով պրովալի ենթարկել Համագումարում պարտիայի կողմից իրեն հանձնված գործը։ Վ. Ի. Լենինն իմանալով Տոմսկու դավաճանության մասին, հրավիրեց ՌԿ(բ)Պ-ի Կենտկոմի նիստ և ընկեր Ստալինի հետ միասին պահանջեց անմիջապես վռնդել Տոմսկուն պարտիայի շարքերից։

*Այդ նիստում ես տեսա ուրիշ Իլյիչի, որի անվերջ մեղմությունն ու բարությունը մեզ համար սովորական երևույթ էր դարձել։ Դա Լենին- առաջնորդն էր, որն անողոքաբար խարազանում էր դավաճանին, պահանջում էր առանց այլևայլության կատարել պարտիայի կամքը, պահպանում էր իր աչքի լույսի պես մեր պարտիայի միասնությունը»*

(Մ. Բրիչկինա)։

*«Նա՝*

*միրում էր ընկերոջը*

*մարդկային մի քնքշությամբ։*

*Նա՝*

*Թշնամու հանդեպ*

*եղնում էր—*

*երկաթից էլ կարծր»։*

(Վ. Մայակովսկի)։



*«Լենինն արտասովոր բարի էր, ոչ սենտիմենտալության իմաստով, որ նա արհամարհանքով վանում էր, այլ այդ խոսքի բարձր կոմունիստական իմաստով։ Սակայն երբ գործը վերաբերում էր ռևոլյուցիայի օգտին, ռևոլյուցիոն օրինականության պահպանմանը, նա լինում էր անողոք։*

*1918 թվի մայիսի 4-ին, նա գրել է պարտիայի Կենտրոնական կոմիտեին կաշառակերներին դատելու առթիվ.*

*«Խնդրում եմ օրակարգի մեջ դնել պարտիայից այն անդամներին վռնդելու հարցը, որոնք լինելով դատավորներ (2. V. 1918) կաշառակերների դատավորության ժամանակ, ապացուցված և խոստովանված կաշառակերության դեպքում բավականացել են ½ տարվա բանտարկության դատավճիռ կայացնելով։*

*Կաշառակերներին գնդակահարելու փոխարեն կայացնել այդպիսի ծաղրականորեն թույլ և մեղմ դատավճիռներ— խայտառակ վարմունք է կոմունիստի և ռևոլյուցիոների համար։ Այդպիսի ընկերներին հարկավոր է* հալածել *հասարակական կարծիքի դատաստանով և* վռնդել պարտիայից, *որովհետև նրանց տեղը Կերենսկու կամ Մարտովի*

կողքին է, և ոչ թե ռևոլյուցիոներ— կոմունիստների կողքին։» (Լ. Ֆոտիևա)

## ԿԱՐԳԱՊԱՀ, ԽՍՏԱՊԱՀԱՆՋ ԴԵՊԻ ԻՆՔԸ ԵՎ ՈՒՐԻՇՆԵՐԸ

«... Նա միշտ կողմնակից էր դիսցիպլինայի և դրա լավագույն ապացույցն է հանդիսանում նրա զավակի՝ մեր բոլշևիկյան պարտիայի ներքին կառուցվածքը։ Բոլշևիկյան պարտիայում դիսցիպլինան ավելի դաժան ու ավելի խիստ է, քան ռազմական դիսցիպլինան։ Այդ նշանավոր չափով կատարվել է ընկեր Լենինի ազդեցության տակ։» (Մ. Վ. Ֆրունզե)

«Լինելով խստապահանջ դեպի ուրիշները, Վլադիմիր Իլյիչն ինքը զարմանալի կերպով կարգապահ էր։ Ամեն մի գործ, ամեն մի պարտիական հանձնարարություն նա կատարում էր զարմանալի ճշտությամբ, խնամքով։ ՌՍԴԲՊ-ի 4-րդ համագումարից հետո Պետերբուրգում սկսվեց պետական դումայի ընտրությունների կամպանիան։ Բոլոր խոշոր ֆաբրիկաներում և գործարաններում կազմակերպվում էին ժողովներ այդ ընտրությունների նախապատրաստման համար։ Համաձայն իմ պարտականությունների, որպես պարտիայի Պետերբուրգի կոմիտեի



քարտուղարի, ես զեկուցողներ էի ուղարկում ձեռնարկությունները։ Դրանց թվում իմ ցուցակի մեջ կար և Լենինը։ Ոչ մի անգամ Վլադիմիր Իլյիչը բաց չի թողել զեկուցումը, ոչ մի անգամ նա չի ուշացել զեկուցմանը։ Զեկուցման հետևյալ օրը նա ներկայանում էր և մեծագույն ճշտությամբ հաղորդում էր ներկա եղողների քանակի, տրված հարցերի, գործարանում կամ ֆաբրիկայում գոյություն ունեցող տրամադրությունների մասին։» (Ե. Ստասովա)

«Վլադիմիր Իլյիչը կարողանում էր խնայել և ուրիշի ժամանակը։ Նա երբեք չէր ստիպում սպասել տալ իրեն և ժողկոմսովետի ու ՍՏՕ-ի նիստերին գալիս էր ճիշտ նշանակված ժամին։ Ժողկոմսովետի և ՍՏՕ-ի անդամների ուշացումները նա պատվիրում էր առանձնապես նշել արձանագրության մեջ, ցույց տալով, թե ով և քանի րոպե է ուշացել։ Կրկնվող ուշացումների դեպքում լինում էր հանդիմանություն՝ նախազգուշացումով, թե հետագայում հանդիմանությունը կլինի հրապարակային՝ մամուլի միջոցով...

Վլադիմիր Իլյիչը չէր ստիպում սպասել տալ իրեն և այն մարդկանց, որոնք գալիս էին նրա մոտ ընդունելության՝ նրա նշա-

նակված ժամին։ Իսկ եթե պատահում էր, որ նա մի քանի րոպե ուշանում էր ընկերներից որևէ մեկի հետ խոսքի բռնվելով, այդպիսի դեպքերում նա միշտ կանչում էր քարտուղարին և պատվիրում էր նրան ներողություն խնդրել սպասող ընկերոջից մի փոքր ուշանալու համար։

Սակայն երբ այցելուն անճշտապահ էր լինում և գալիս էր նշանակված ժամանակից ուշ, Վլադիմիր Իլիչը չէր քաշվում և երբեմն, երբ սաստիկ զբաղված էր լինում, բոլորովին մերժում էր նրան ընդունել։»

(Լ. Ֆոտիևա)

«Վլադիմիր Իլիչն երբեք չէր դուրս գալիս կաբինետից, առանց էլեկտրական լույսը հանգցնելու և, եթե մենք, պատահում էր, դուրս էինք գնում լույսը վառ թողնելով, իսկ նա այդ իմանում էր, ապա երբեք չէր մոռանում հետևյալ օրը մեզ նկատողություն անել էլեկտրական էներգիայի ապարդյուն վատնումի համար։» (Լ. Ֆոտիևա)

«Վ. Ի. Լենինը միշտ խիստ կերպով դատապարտում էր պարզորոշության, ճշգրտության, գործիմացության բացակայությունը, չէր հանդուրժում անփութությունը, թափթփվածությունը, անշահագրգռվածությունը կատարվող աշխատանքի մեջ և իր սովորա-



կան համառությամբ ու հաստատակամությամբ պայքարում էր այդ թերությունների դեմ...

Լենինը պահանջում էր յուրաքանչյուր աշխատողից մինչև վերջը, այսինքն մինչև ռեալ կերպով շոշափելի արդյունք ստանալը տանել յուրաքանչյուրին հանձնված գործը։ Այդ կանոնը չկատարելու մեջ նա տեսնում էր բյուրոկրատիզմի և ձգձգումների գլխավոր պատճառներից մեկը...

Իր փոքրիկ ապարատի աշխատողներին էլ Վլադիմիր Իլիչը համբերությամբ և համառորեն սովորեցնում էր աշխատել և երբեք այդ դեպքում առանց ուշադրության չէր թողնում ոչ մի սխալմունք...

Բյուրոկրատիզմի և ձգձգումների դեմ պայքարելու գործում Լենինը կարևորագույն էր համարում կատարման ստուգումը, կամ, ինչպես ինքն էր ասում, ստուգումն այն բանի, թե ինչ է ստացվում գործնականում...

Լենինը պահանջում էր բանիմացություն և գործնականություն աշխատանքի մեջ։ Այդ գիծը կարմիր թելի նման անցնում է նրա ամբողջ օպերատիվ աշխատանքի միջով։ «Դուք գրում էք երկար թղթեր գանգատներով, ավելի ճիշտ՝ լացով, փոխանակ գործնական առաջարկությունների...»— գրում էր նա պա-

ընտավորման ժողովմին։— Դուք վճռավել եք, այլ ոչ թե պայքարել, չեք սպառել պայքարի բոլոր միջոցները,— հաճախ լսում էին նրանից ընկերները աշխատանքի մեջ եղած որևէ անհաջողության առթիվ...

Իր իմաստուն ցուցմունքներով և անձնական օրինակով Վլադիմիր Իլիչը համբերությամբ դաստիարակում էր մարդկանց մեջ պետական աշխատանքի կուլտուրական ունակություններ։ Ձգձգումների դեմ պայքարելում նա մոտենում էր բոլոր կողմերից։ Հարկավոր դեպքում նա դիմում էր նաև վարչական տույժի միջոցներին, ձգձգումների գործերը հանձնում էր հրապարակայնության, դնում էր հասարակական դատաստանի առաջ։» (Լ. Ֆոտիևա)

## ԱՆԽՈՆՋ, ԿԵՆՍՈՒՐԱԽ ..

«Ինձ հիացնում էր նրա մեջ վառ արտահայտված կամքը դեպի կյանքը և նրա ակտիվ ատելությունը կյանքի չարությունների դեմ, ես հիանում էի այն պատանեկական կրակոտությամբ, որով նա համակում էր ամեն ինչ, որ կատարում էր։ Ինձ ապշեցնում էր նրա գերմարդկային աշխատունակությունը։ Նրա շարժումները թեթև էին, ճարպիկ և ժլատ, սակայն ուժեղ ժեստը լիո-



վին ներդաշնակում էր նրա խոսքերին, որոնք նույնպես ժլատ էին բառերով, բայց հարուստ էին իմաստով։ Եվ նրա մոնղոլական տիպի երեսին խաղում էին կեղծիքի և կյանքի դաժանության դեմ անխոնջ պայքարողի այդ սուր աչքերը, վառվում էին կկոցելով, աչքով անելով, ծաղրալի ժպտալով, ցասումով փայլելով։ Այդ աչքերի փայլը նրա խոսքերը դարձնում էր ավելի ևս այրող և պարզ։

Երբեմն թվում էր, թե նրա ոգու անզուսպ եռանդը ցայտում է կայծերով և այդ եռանդով հագեցված խոսքերը փայլում են օդի մեջ։» (Մ. Գորկի)

«... Շատերը զարմանում էին, որ արտաքսված լինելով համալսարանից, նա մի տարվա մեջ, առանց որևէ կողմնակի օգնության, ոչ մի դասընթացային, կամ կիսադասընթացային քննություններ չտալով, պատրաստվեց այնքան լավ, որ իր կուրսի հետ միասին քննություն տվեց։ Բացի հրաշալի ընդունակություններից, Վլադիմիր Իլիչին օգնել է գրանում նրա մեծ աշխատունակությունը» (Ա. Ի. Ուլյանովա—Ելիզարովա):

«Վլադիմիր Իլիչը, համարվելով երկարատև բանտարկության, տանելով հեռա-

վոր աքսորի, դրանից հետո վճռեց այդ ժամանակվա ընթացքում օգտագործել Պետերբուրգի գրադարանները, որպեսզի նյութեր հավաքի իր նշած աշխատանքի՝ «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում»-ի համար։

... Ես նրա համար կրել եմ գրքերի ամբողջ հակեր, որոնցով լիքն էր նրա բանտի խուցի անկյուններից մեկը։ ... Մի խոսքով, Վլադիմիր Իլիչը բանտում էլ ցույց էր տալիս իր մշտական եռուն էներգիան... Մի անգամ, երբ բանտարկության վերջին օրերին ես նրան հայտնեցի, որ լուրերի համաձայն գործը շուտով կվերջանա, նա բացականչեց. «Շուտ է, ես դեռ չեմ հավաքել բոլոր նյութերը»։ (Ա. Ի. Ուլյանովա— Ելիզարովա)։

«Լենինի ժամանակ ժողկոմսովետում մթնոլորտը գործնական էր և կենդանի... Ժողկոմսովետում տիրում էր մի ինչ-որ թանձրացած տրամադրություն, թվում էր, թե ինքը, ժամանակը, դարձել է ավելի թանձր, այնքան շատ փաստեր, մտքեր և վճիռներ էին տեղավորվում ամեն մի տվյալ րոպեի մեջ»։ (Ա. Վ. Լունաչարսկի)

«Վ. Ի. Լենինն աշխատում էր կազմակերպված և պլանով։ Նա միշտ առավոտները գալիս էր իր կաբինետ միևնույն ժա-



մին, աչքի էր անցկացնում բազմաթիվ թերթեր, նայում էր նոր թղթերը, կարգադրություններ էր անում, խոսում էր հեռախոսով, ընդունում էր ընկերներին, նախագահում էր նիստերին և խորհրդակցություններին և միշտ ուղիղ ժամի 4-ին գնում էր տուն ճաշելու... Ճաշելով և քիչ հանգստանալով, ժամի 6-ին վերադառնում էր իր կաբինետը, միշտ տոմսակ-հանձնարարությունների մի ամբողջ կապոցով մեզ համար, միշտ լի եռանդով և ստեղծագործող նախաձեռնությամբ»։ (Լ. Ֆոտիևա)

«Հազվագյուտ դեպքերում, երբ նա հեռանում էր քաղաքից «հանգստանալու», հեռախոսը քարտուղարության և Վլադիմիր Իլիչի գտնվելու վայրի միջև չէր դադարում գործելուց։ Կամ նրան էին զանգահարում, կամ ինքն էր զանգահարում, անելով այս կամ այն կարգադրությունը։ Թվում էր, թե Վլադիմիր Իլիչի ուղեղը մի րոպե իսկ չի հանգստանում»։ (Ս. Բրիչկինա)

«Երբ ես մոտից ճանաչեցի Լենինին, ես գնահատեցի նրա մի գիծը ևս, որը միանգամից աչքի չի ընկնում. այդ կյանքի զարմանալի ուժն է նրա մեջ։ Այդ ուժը նրա մեջ եռում է և խայտում... ի՞նչպես է նա փարակիլ կերպով, երեխայի նման, անուշ

ծիծաղում և ինչքա՜ն հեշտ է նրան ծիծաղեցնել, ինչպիսի՜ տրամադրությամբ ծիծաղի— (դժվարությունները հաղթահարելու մարդու այդ արտահայտությունը)։ Ամենատանջալի րոպեներին, որ մենք ապրել ենք, Լենինը միշտ եղել է միակերպ և նույնպես տրամադիր ուրախ ծիծաղելու»

(Ա. Վ. Լունաչարսկի)

«Նա ճգնավոր չէր, սիրում էր և՛ սահունակներով սլանալ, և՛ վելոսիպեդ քշել, և՛ բլուրների վրա մագլցել, և՛ որսի դուրս գալ, սիրում էր երաժշտությունը, սիրում էր կյանքը նրա բոլոր բազմապիսի գեղեցկությամբ, սիրում էր ընկերներին, սիրում էր մարդկանց։ Բոլորը գիտեն նրա պարզությունը, նրա ուրախ, վարակիչ ծիծաղը։ Բայց ամեն ինչ նրա մեջ հպատակվում էր մի բանի— պայքարին ամենքի համար լուսավոր, կրթված, ունևոր, բովանդակալից, ուրախ կյանք ստեղծելու։ Ամենից շատ նրան ուրախացնում էին այդ պայքարի հաջողությունները։ Անձնականը նրա մեջ ինքնին ձուլվում էր նրա հասարակական գործունեության հետ։» (Ն. Կ. Կրուպսկայա)

## ՆՐԲԱԶԳԱՑ, ՀՈԳԱՏԱՐ...

«Լենինը ոչ միայն հանճարեղագույն միտք է, այլ հսկայական մարդկային



սիրտ։ Ինչպիսի՜ քնքշությամբ, ինչպիսի՜ հոգատարությամբ էր վերաբերվում յուրաքանչյուր ընկերոջ... Ինչպես հաճախ գործնական խոսակցության ժամանակ նա հանկարծ դառնում էր ինձ այնպիսի խոսքերով, որոնց մեջ լսվում էր անհանգստություն։

— Բայց գիտե՞ք, որ այսինչ աշխատակցուհու տեսքը շատ վատ է։ Նրան անհրաժեշտ է լավ բժշկել և կերակրել։ Դուք, խնդրում եմ, հոգ տարեք այդ մասին։

... Նրա հոգատարությունը մարդկանց վերաբերմամբ զարմանալի էր։ Նա մի անգամ նկատեց, որ Կենտկոմի անդամներից մեկի կոշիկները պատռված են։ Վլադիմիր Իլյիչն անմիջապես կարգադրեց ձեռք բերել կոշիկներ և այնպիսի ձևով տալ այդ ընկերոջը, որ նա չվիրավորվի և չհրաժարվի կոշիկներից։

... Երբեք Վլադիմիր Իլյիչը մի խոսքով անգամ չէր հասկացնում, որ բազմապիսի անձնական խնդիրներով խլում են իր ժամանակը և ուժերը։

Միակ մարդը, որի մասին նա մոռանում էր մտածել և հոգ տանել, այդ ինքն էր։

Քիչ չէր պատահում, որ մինչև ուշ գիշեր տևող լուրջ ժողովի վերջում նրա դեմքը հոգնածությունից ստանում էր գորշ գույն։

Իսկ շատ ու շատ հաճախ էր պատահում նկար նատել։» (Ս. Բրիչկինա)

«Աշխատողներից մեկին Վ. Ի. Լենինը գրում է. «Ստալինի բնակարանը Կրեմլում այնպիսին է, որ նրան չեն թողնում քնել (խոհանոց— աղմուկ վաղ առավոտից)։ Ասում են, որ դուք համաձայն եք առել փոխադրել նրան ճանճիստ բնակարան։ Խնդրում եմ Ձեզ անել այդ շուտով և գրել ինձ։ ԿԱՐՈ՞Ղ ԵՔ անել այդ և ե՞րբ»։

Ահա Լենինի մի ուրիշ տոմսակը գրած իր քարտուղարին. «Երբ Ստալինը զարթնի (չզարթեցնեք նրան), ասել նրան, որ ես ժամի 11-ից համաձայնաժողովումն եմ (ինձ մոտ) և որ ես խնդրում եմ Ստալինին տալ ինձ իր հեռախոսը (երբ Ստալինը կգնա), որովհետև ինձ հարկավոր է խոսել նրա հետ հեռախոսով։»

Ահա Վլադիմիր Իլիչի գրած տոմսակը Ա. Դ. Ցյուրուպային. «Թանկագին Ա. Դ... Դուք բոլորովին անտանելի եք դառնում պետական գույքի հետ վարվելու մեջ։ Հրամանագիր. երե՛ք շաբաթ բժշկվել... Ճշմարիտ, աններելի բան է խլում տեղը վատնել Ձեր առողջությունը։ Հարկավոր է կարգի ընկնել...»

Պարտիայի Կենտկոմի քարտուղարությա-



նը Վլադիմիր Իլիչն ուղղում է տոմսակ՝ հետևյալ բովանդակությամբ. «Առաջարկում եմ Մանուիլսկուն ստիպել, որ գնա լավագույն բժիշկների մոտ (ուղարկել նրանց նրա մոտ) դիագնոզի և ԼՈՒՐՋ բժշկության համար» (Վլադիմիր Իլիչի գրություններ. ՏԱՍՍ)։

«Համաշխարհային հռչակ վայելող պրոֆեսոր Ի. Պ. Պավլովը, տանջված ցրտից և քաղցից, որ այն ժամանակ, 1919 թվին, ապրում էր Պետրոգրադում, գրել էր ինձ, որ թույլ տրվի իրեն արտասահման գնալու։ Ես իսկույն այդ մասին հայտնեցի Վլադիմիր Իլիչին։

—Ես ինքս անմիջապես կգրեի նրան,— շտապ արձագանքեց Վլադիմիր Իլիչը,— բայց, հո՛, տեսնում եք ինչ է կատարվում ինձ մոտ,— և նա ցույց տվեց բոլոր ռազմաճակատներից ստացված հեռագրերի կույտերը, որ նա ուշադրությամբ ուսումնասիրում էր։— Իսկույն և եթ գրեցեք նրան, որ մենք անհապաղ կստեղծենք ամենը, ինչ որ հարկավոր է նրա աշխատանքի համար, ասացեք նրան, որ մենք չափազանց գնահատում ենք նրա աշխատանքը և թող նա իմանա, որ հենց որ վերջացնենք ինտերվենտների և սպիտակ գվարդիականու-

թյան հետ, անմիջապես կզբաղվենք գիտնականների աշխարհի կազմակերպությամբ։ Ես համատացած եմ,— ավելացրեց նա,— Ռուսաստանը պիտի դառնա այն երկիրը, որտեղ հավաքվելու են ամբողջ աշխարհի գիտնականները, հենց մեզ մոտ պետք է ծաղկեն գիտությունները, լաբորատորիաները, ինստիտուտները և ամեն ինչ, ամեն ինչ»։ (Վլադ. Բոնչ-Բրուևիչ)

ԱՄՈՒՐ ՋՈՒԼՎԱԾ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ...

«Հավատը մասսաների ստեղծագործական ուժերին,— դա այն իսկ առանձնահատկությունն է Լենինի գործունեության մեջ, որը հնարավորություն էր տալիս նրան իմաստավորել տարերքը և ուղղել նրա շարժումը դեպի պրոլետարական ռևոլյուցիայի հունը»։

(Ի. Ստալին)

«Վլադիմիր Իլյիչը հետաքրքրվում էր բանվորների կենցաղը, կյանքը պատկերող բոլոր մանրամասներով, նրանց առանձին գըծերից աշխատում էր ընդգրկել բանվորի ամբողջ կյանքը, գտնել այն, ինչին կարելի էր կառչել, որպեսզի ավելի լավ մոտենա բանվորին ռևոլյուցիոն պրոպագանդայով... Վլադիմիր Իլյիչը կարդում էր բանվորների հետ Մարքսի «Կապիտալը», բացատրելով նրանց այն, իսկ դրամագրքների երկրորդ



մասը նվիրում էր հարց ու փորձի՝ բանվորների դրության, աշխատանքի պայմանների մասին և ցույց էր տալիս նրանց կյանքի կապը հասարակության ամբողջ կառուցվածքի հետ, ասելով, թե ինչպես, ինչ ձևով կարելի է վերակառուցել գոյություն ունեցող կարգը։ Թեորիայի և պրակտիկայի շաղկապումը— ահա որն էր Վլադիմիր Իլյիչի աշխատանքի առանձնահատությունը խմբակներում»։ (Ն. Կ. Կրուպսկայա)

«Չեմ կարող պատկերացնել ինձ մի ուրիշ մարդու, որը այդքան բարձր կանգնած լինելով մարդկանցից, կարողանար պահել իրեն փառասիրության գայթակղությունից և չկորցներ կենդանի հետաքրքրությունը դեպի «հասարակ մարդիկ»։

Կար նրա մեջ մի մագնիտիզմ, որը ձգում էր դեպի նա աշխատանքի մարդկանց սրտերն ու համակրանքը։ Նա չէր խոսում իտալերեն, Կապրիի ձկնորսները, որոնք տեսել են Շալյապինին և շատ ուրիշ խոշոր ռուս մարդկանց, մի ինչ-որ հոտառությամբ միանգամից առանձին տեղ հատկացրին Լենինին...»։ (Մ. Գորկի)

«Հայդ-պարկում մի քանի բանվորներ, որ առաջին անգամն էին տեսել Լենինին, խոսում էին նրա վարքի մասին համագումա-

րում։ Նրանցից մեկը բնորոշ կերպով ասաց.

— Զգիտեմ, գո՞ւցե այստեղ, Եվրոպայում բանվորներն ունեն մի ուրիշ, այդ տեսակ խելոք մարդ,— Բեբելը, կամ մի ուրիշը։ Բայց ահա, չեմ հավատում, որ գտնվի մի ուրիշը, որին ես միանգամից սիրեի, ինչպես նրան։

Մի ուրիշ բանվոր ավելացրեց ժպտալով.

— Նա— մերն է։

Նրան առարկեցին.

— Պլեխանովն էլ մերն է։

Ես լսեցի դիպուկ պատասխան.

— Պլեխանովը մեր ուսուցիչն է, մեր աղան է, իսկ Լենինը— մեր առաջնորդն է և ընկերը»։ (Մ. Գորկի)

«1919—1920 թ. թ. ծանր տարիներին Վլադիմիր Իլյիչի մոտ անընդհատ հեղեղի նման ընդունելության էին գալիս բանվորներ, գյուղացիներ, առանձին խնդրատուներ։ Նրանք գալիս էին իրենց գանգատներով, պահանջներով, կարիքներով, գալիս էին մի մարդու մոտ, որը կարող էր օգնել նրանց, ցույց տալ ուղիղ ճանապարհը։ Բավական էր երբեմն ասել եկածներին, որ Վլադիմիր Իլյիչը կընդունի նրանց, իսկույն նրանց դեմքերի վրա հայտնվում էր անսովոր լրջություն և մի ինչ-որ առանձին վերելքի ու



հուզմունքի արտահայտություն, որն ամենից ուժեղ կերպով նկատվում էր գյուղացիների դեմքերին։ Ուղիղ կաբինետի դռան առաջ նրանք կանգ էին առնում, երկու ձեռքով սղալում էին մազերը, ուղղում էին իրենց հագուստը։ Բայց ահա դիմավորելով նրանց, բարձրանում էր իր տեղից Վլադիմիր Իլյիչը, հասարակ, հասկանալի, ամուր սեղմում էր այցելուների ձեռքը, նստեցնում էր իր շուրջը և երկչոտությունն իսկույն անհայտանում էր. տեղի էր ունենում կենդանի զրույց։ Հարկավոր էր տեսնել Վլադիմիր Իլյիչին այդ րոպեներին։ Նա ներծըծում էր խոսակցի յուրաքանչյուր բառը, ամբողջ մարմնով թեքվելով նրա կողմը։

Զրույցը վերջացած է։ Մարդիկ, որոնք քիչ առաջ այնպիսի վախով մտնում էին Վլադիմիր Իլյիչի կաբինետը, դուրս էին գալիս այնտեղից վստահ, երջանկությունից փայլող դեմքերով։ Թվում էր, թե այնտեղ, այդ սովորական սենյակի դռների հետևում, նրանք թողել են իրենց բոլոր տարակուսանքները»։ (Ս. Բրիչկինա)

### ԼԵՆԻՆԸ ԿԵՆԴԱՆԻ Է, ԼԵՆԻՆԸ ՀԱՎԻՏՅԱՆ ԿԵՆԴԱՆԻ ԿՄՆԱ

«... Միթե՞ կարող է դադարել այդպիսի սիրտը։ Միթե՞ կարող է դադարել լուսավո-

ինչպես այդպիսի ճառագայթող միտք: Մի՞թե կարող է մարել նրա մեջ ապրած երկաթե կամքը: Լենինը չի կարող մեռնել մեզ համար: Մեռած դրության մեջ էլ նա մեզ համար կենդանի է, միշտ կմնա կենդանի, միշտ, միշտ մեր, անմահ առաջնորդը և ուսուցիչը, ապագա մարդու մեծ նախապատկերը»: (Կլարա Ցետկին):

«Լենինը-բոց է: Լենինը—համաշխարհային պրոլետարիատի թույրն է: Նա բոց է, որը լուսավորում է և ջերմացնում: Նա թուրն է, որով մենք ճանապարհ ենք բացում մեզ համար: Լենինը մեռավ, բայց նրա կյանքի աշխատանքի բոցը լուսավորում է մեզ և ջերմացնում է առաջվա նման... Մենք ամեն կողմից շրջապատված ենք հակառևոլյուցիայով, բայց դրա կողքին, որպես օրինակ, կանգնած է Լենինի գործը—Սովետական Ռուսաստանը, Սովետների Սոցիալիստական Ռեսպուբլիկան և Ռուսաստանի Կոմունիստական Պարտիան»: (Կլարա Ցետկին)

«Մեռավ Վլադիմիր Իլիչը: Նրա բանականության և կամքի ժառանգները կենդանի են: Կենդանի են և աշխատում են այնպես հաջող, որպես ոչ ոք, երբեք, ոչ մի տեղ աշխարհում չի աշխատել»: (Մ Գորկի)



«Մահից հետո մարդը ապրում է միայն երկրի երեսին: Լենինն ապրում է ամեն տեղ, ուր կան ռևոլյուցիոներներ: Բայց կարելի է ասել ոչ ոքի մեջ այնպես մարմնացած չեն Լենինի միտքն ու խոսքը, ինչպես Ստալինի մեջ: Ստալինը՝ դա Լենինն է Այսօր:

Երբ գիշերով անցնում ես Կարմիր հրապարակով, նրա ընդարձակ պանորաման կարծես կիսվում է. այն, ինչ որ կա այժմ— Հայրենիքն է երկրագնդի բոլոր լավագույն մարդկանց,— և այն հինը, որ կար մինչև 1917 թիվը: Եվ թվում է, թե նա, ով պառկած է մավզոլեում, գիշերային ամայի հրապարակի մեջտեղում, այժմ մնացել է միակ մարդը աշխարհիս երեսին, որը չի քնում, նա հսկում է ամենքին, ինչ որ ընկած է նրա չորս կողմը,— քաղաքները, գյուղերը: Նա իսկական առաջնորդ է, մի մարդ, որի մասին բանվորներն ասում էին ուրախությունից ժպտալով, թե նա միաժամանակ նրանց և՛ ընկերն էր, և՛ ուսուցիչը: Նա հայր էր և ավագ եղբայր, որ հիրավի ունկնդրում էր ամենքին: Դուք նրան չէիք ճանաչում, իսկ նա ձեզ ճանաչում էր, մտածում էր ձեր մասին: Ով էլ լինեք դուք, այդ բարեկամի կարիքն ունեք դուք: Եվ

*ով էլ լինեք դուք, ձեր բախտի լավագույնը գտնվում է մի ուրիշ մարդու ձեռքում, որը նույնպես արթուն է բոլորիդ փոխարեն և աշխատում է,— մի մարդ գիտնականի գլխով, բանվորի դեմքով, հասարակ զինվորի հագուստով»:* (Հանրի Բարբյուս)

*«Ընկե՛ր Լենին,*
*ֆաբրիկներում ծխոտ,*
*հողերի վրա,*
*ծածկված*
*և ձյունով*
*և ծղնոտով,*

*Ձեր,*
*ընկեր,*
*սրտով*
*և անունով*
*Մտածում ենք,*
*շնչում,*
*պայքարում*
*և ապրում»:*

(Վ. Մայակովսկի):



***

Մոնտաժի համար օգտագործված են հետևյալ նյութերը:

*Ի. ՍՏԱԼԻՆ.*— «Լենինի մասին», Պետհրատ. 1940:
Մ. Վ. Ֆրունզե— «Լենինը և Կարմիր բանակը», Ընտիր երկեր, Վոենիզդատ, 1940:
Մ. ԳՈՐԿԻ.— «Վ. Ի. Լենին», Երկեր, հատ. XXI—XXII:
Վլ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ— պոեմա «Վլադիմիր Իլիչ Լենին», (հայ. թարգմ. Գ. Արովի), Բանաստեղծություններ, «Զրույց ընկեր Լենինի հետ»:
*ԿԼԱՐԱ ՑԵՏԿԻՆ.*— «Հիշողություններ Լենինի մասին», Պարտհրատ, 1933:
*Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ.*— «Հիշողություններ Լենինի մասին», Պարտհրատ, 1934.
*Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ.*— «Լենինը կոմունիստական մորալի մասին», «Կոմսոմոլսկայա Պրավդա», 1937 թ. 2 հոկտեմբերի:
Ա. Ի. ՈՒԼՅԱՆՈՎԱ—ԵԼԻԶԱՐՈՎԱ— Հիշողություններ Իլիչի մասին»: «Մոլոդայա գվարդիա», 1935.
Հ. ԲԱՐԲՅՈՒՍ.— «Ստալին»:
Ա. Վ. ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ— «Հիշողություններ Լենինի մասին», Պարտհրատ 1933:
Ն. Ն. ՎՈՐՈՆՑՈՎԱ «Իմ հիշողությունները

Վլադիմիր Իլիչի մասին», «Պատմվածքներ Լենինի մասին» ժողովածու, Դետիզդատ, 1939:

Հոդվածներ հիշողություններ թերթերում և ժուռնալներում.

Լ. ՖՈՏԻԵՎԱ — «Պրավդա», 22 ապրիլի, 1940 թ., «Իզվեստիա», 21 ապրիլի 1940թ., «Լիտերատուրնայա գազետա», 21 հունվարի, 1940 թ., և «Օգոնյոկ» ժուռնալում № 2, 1940 թ.:

Մ. ԲՐԻՋԿԻՆԱ — «Մոսկովսկի կոմսոմոլեց» թերթում, 22 ապրիլի, 1940 թ.:

Գ. ԱՆՏՈՆՈՎ — «Կրասնայա Զվեզդա» թերթում, 21 հունվարի, 1940 թ.:

Ե. ՍՏԱՍՈՎԱ — «Սմենա» ժուռնալում № 4, 1940 թ.:

ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ — «Լիտերատուրնայա գազետա», 21 հունվարի 1940 թ.:

ՄԱՐՏԻՆ ԱՆԴԵՐՍԵՆ-ՆԵԿՍԵ — «Իզվեստիա», 20 ապրիլի, 1940 թ.:

Վլադիմիր Իլիչի գրությունները (ՏԱՍՍ). — «Կոմսոմոլսկայա Պրավդա» թերթում, 21 ապրիլի, 1940 թ.:

---



# ՊԱՍՏՅՈՐԻ ԳԻՏԱԿԱՆ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՊԱՅՔԱՐԸ ԿՐՈՆԻ ԴԵՄ

*Կան հանճարներ, որոնց կյանքը, իսկական ծառայություն է մարդկությանը: Նրանք, հետագա սերունդների կյանքում թողնում են խորը, անջնջելի հետք:*

*Հենց այդպիսին էր Լուի Պաստյորը:*

*Պաստյորը ծնվել է 1822 թվին, Ֆրանսիայում, կաշեգործ վարպետի ընտանիքում: Հայրը կիսագրագետ էր, սակայն որդուն ցանկացավ կրթություն տալ: Այդ բանի համար նա արավ այն ամենը, ինչ հնարավոր էր և Լուին վերջացրեց սկզբում՝ միջնակարգ, իսկ հետո էլ՝ բարձրագույն դպրոցը: Դեռ դպրոցում եղած ժամանակ, նա մեծ փափագով լցվեց դեպի գիտությունները և իրեն նվիրեց քիմիային: Շնորհիվ իր փայլուն ընդունակություններին, Պաստյորը շուտով հայտնի դարձավ, որպես գիտնական-քիմի-*

կոս: Սակայն նա համաշխարհային հռչակ ձեռք բերեց ոչ որպես քիմիկոս: Այդ բանը կատարվեց պատահաբար, և ահա թե ինչպես:

## ՈՉ ԹԵ «ՋԱՅՐՈՒՅԹՆ ԱՍՏԾՈ» ԱՅԼ ՄԻԿՐՈԲՆԵՐԸ

Ֆրանսիայի հարավում շատ է զարգացած շերամապահությունը: Այստեղ մարդկանց մեծամասնության համար շերամապահությունը հանդիսանում է գոյության պահպանման միակ աղբյուրը:

Ինչպես հայտնի է, մետաքսն արտադրում են շերամի թրթուրները թթենու տերևներից: Այդ թրթուրը, որը կոչվում է նաև մետաքսի որդ, մինչև թիթեռ դառնալը, իր շուրջը հյուսում է մետաքսի ոստայն— բոժոժ (KOKOH) և մտնում մեջը: Շերամապահները քանդում են այդ բոժոժները, նրանցից թելեր են պատրաստում, իսկ թելերից՝ գործվածքներ:

1849 թ. շերամի թիթեռների և թրթուրների մեջ ինչ-որ հիվանդություն ընկավ և նրանք սկսեցին մեծ քանակությամբ սատկել: Տարեց-տարի այդ հիվանդությունն ուժեղանում էր. նա տարածվեց ամբողջ Ֆրանսիայում, այնտեղից անցավ Եվրոպայի մյուս երկրները և անգամ Արևելքը՝ շերամապահության հայրենիքը:



Հոգևորականությունն այդ աղետը «աստծո պատիժ»— հայտարարեց: Բայց զայրացած աստծո գութը ոչ մի միջոցով չէր հաջողվում շարժել: Այն ժամանակ կառավարությունը դիմեց գիտնականներին՝ այդ աղետի դեմն առնելու խնդրանքով: Սակայն գիտնականներն իրենց արժանապատվությունից ցածր համարեցին գլուխ ցավացնել ինչ-որ որդերով՝ նրանց կործանումից փրկելու համար:

Այդ գործին կպավ քիմիկոս Պաստյորը:

Պաստյորը դուրս էր եկել ժողովրդի ծոցից: Ժողովրդի վշտերն ու կարիքները մոտ էին նրա սրտին: Եվ նա սկսեց ուսումնասիրել շերամի որդերի այդ հիվանդությունը:

Շատ ծանր լարված և երկարատև աշխատանքը գիտնականի ուժերը թուլացրին: Նրա վրա անդրադարձան նաև դրան նախորդ ծանր աշխատանքի տարիները, երբ Պաստյորն ստիպված էր լինում իր հետազոտությունները կատարել մի փոքրիկ լաբորատորիայում, որն ինքն էր իր համար սարքել ձեղնահարկում:

Միջոցներ չունենալով ծառա վարձելու, Պաստյորը, այն ժամանակ, բարդ գիտական պրոբլեմների վրա լարված աշխատելուց հետո, ստիպված էր լինում ինքը կատարել ողջ սև աշխատանքը. հավաքել, ձեղնահարկը ջուր տանել, ամանները լվանալ, գիշերները

մի քանի անգամ վեր կենալ ձեղնահարկում բուն դրած առնետներին ուսալ, որպեսզի նրանք իր ծանր աշխատանքների արդյունքները չփչացնեին։

Բայց ահա, շերամի առեղծվածային հիվանդության ուսումնասիրման ամենաեռանդուն աշխատանքների ընթացքում, Պաստյորը, ուղեղն արյուն հոսելու հետևանքով, կաթվածահար է լինում և մարմնի կիսով անդամալույծ դառնում։ Սակայն գիտնականը հենց որ կազդուրվում է, նորից կպչում է աշխատանքին, և 1868 թ. վերջացնում է այդ բարդ խնդրի լուծումը։

Դեռ մինչև Պաստյորը, գիտնականները շերամի հիվանդ որդերի մարմնի մեջ նկատել էին ինչ-որ փոքրիկ մարմնիկներ, որոնք տեսանելի էին միայն ուժեղ խոշորացման դեպքում (միկրոսկոպի տակ)։ Դրանք միկրոբներ էին։ Բայց գիտնականները նրանց ոչ մի նշանակություն չէին տալիս։

Շերամի որդերի հիվանդության երկարատև ուսումնասիրությունից հետո Պաստյորը որոշեց՝ միկրոբ պարունակող որդերին և ձվիկներին անջատել միկրոբ չպարունակող որդերից և ձվիկներից։ Բանից դուրս եկավ, որ միկրոբ չպարունակող որդերը և ձվիկները զարգանում էին շատ նորմալ կերպով, նորմալ սերունդ և լավ թել էին տալիս, իսկ



ընդհակառակը այն որդերը և ձվիկները, որոնց մեջ կային միկրոբներ, սատկում էին։

Այժմ հարցը պարզ էր։

Հենց որ շերամապահներն սկսեցին Պաստյորի ցուցմունքով վարակված ձվերը և որդերը ոչնչացնել, հիվանդությունը կամացկամաց պակասեց և այնուհետև ամբողջովին ոչնչացավ։

Շերամապահությունը նորից սկսեց ծաղկել։

Ահա այսպես, գիտությունը հաղթահարեց այն աղետը, որը վերագրվում էր «աստծո զայրույթին»։

Այժմ Պաստյորի մեջ միտք ծագեց— արդյո՞ք մարդկանց և կենդանիների հիվանդությունները չեն առաջանում, որևէ նույնպիսի միկրոբներից։

Դրանից ոչ-շատ առաջ, սիբիրախտով սատկած կենդանիների արյան մեջ միկրոսկոպով հայտաբերվել էին ինչ-որ ձողիկանման մարմնիկներ։

Պաստյորը այդ ձողիկներից որոշ քանակությամբ մսի բուլյոնի մեջ լցրեց։ Միկրոբներն այստեղ շատ հիանալի կերպով աճեցին, բազմացան և այնպիսի զգալի ուժ դարձան, որ բավական էր մուծել այդպիսի բուլյոնի մի քանի կաթիլ որևէ կենդանու օրգանիզմի մեջ, որպեսզի իսկույն ևեթ նրա

մեջ առաջանում սիբիրախտ և հետո՝ մահ։

Միաժամանակ, Պաստյորը ուսումնասիրեց հավի խոլերան, որից մեծ քանակությամբ հավեր էին սատկում։ Հավի խոլերայի միկրոբների բուլյոնային լուծույթի ներարկումից հետո, նույնպես առաջանում էր մահացու հիվանդություն, սակայն այս անգամ հավի խոլերայով։

Այսպիսով, Պաստյորը հսկայական նշանակություն ունեցող նոր հայտնագործություն արավ— հիվանդությունները չեն հանդիսանում որպես սատծո զայրույթի նշանը, այլ առաջանում են միկրոբներից, որոնք հասարակ աչքի համար անտեսանելի են։

## ՀԱՂԹԱՆԱԿՆ ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԹՇՆԱՄՈՒ ՎՐԱ

Աշխատելով միկրոբների վրա, Պաստյորը, այնուհետև պարզեց, որ եթե կենդանիները վարակվեն երկար ժամանակ բացօթյա մնացած բուլյոնի միկրոբային լուծույթով, ապա հիվանդությունը ծանր բնույթ չի ստանում և մահով չի վերջանում։ Բացի դրանից, այն կենդանիները, որոնք այդպիսի բուլյոնի ներարկումից առաջացած հիվանդությունից առողջանում են, ապա այնուհետև նրանք երբեք նույն հիվանդությամբ չեն հիվանդանում։

1881 թ. Պաստյորը զեկուցում տվեց Գի-



տությունների Ակադեմիկայում՝ սիբիրախտի և հավախոլերայի դեմ կատարած ներարկումների իր գյուտի մասին։ Այդպիսի գյուտին տատանվում էին անգամ հավատալ և առաջարկեցին ստուգում կատարել։

Այդ նպատակի համար զոհաբերեցին տասը կով, 48 ոչխար և 2 այծ ու առաջարկեցին Պաստյորին՝ ցույց տալ այդ կենդանիների վրա իր ներարկումների ուժը։

Պաստյորը մրցահրավերն ընդունեց։

Ստուգմանը մասնակցեցին գյուղական կալվածատերեր, բժիշկներ, անասնաբույժներ, ժուրնալիստներ, սենատորներ և շատ ուրիշ շահագրգռված անձինք։

1881 թ. մայիսի 5-ին, Պաստյորն սկսեց իր ուշագրավ փորձը. նա իրեն հանձնված կենդանիներին բաժանեց երկու հավասար մասերի. առաջին կիսին, նա երկար ժամանակ բացօթյա թողած միկրոբային լուծույթի նախապահպանական ներարկումներ կատարեց, իսկ մյուս կիսին՝ ստուգման նպատակով, թողեց առանց ներարկումների։

Մայիսի 31-ին բոլոր անասուններին և՝ նախապահպանական ներարկում կատարածներին, և՛ չկատարածներին— Պաստյորը սիբիրախտի միկրոբների բուլյոնային լուծույթի մահացու դոզա սրսկեց։ Հետևյալ օրը ցանկապատված հողամասում սատկած ըն-

կած էին 5 կով, մեկ այծ և 22 ոչխար, կենդանիների այն թվից, որոնց նախապահպանական ներարկում չէր կատարված։ Երկու ոչխար ծանր դրության մեջ էին և մեկ օր հետո նրանք էլ սատկեցին։ Ընդհակառակը, այն կենդանիները, որոնց նախապահպանական ներարկումներ էին կատարված, մնացել էին կենդանի և անվրդով կերպով իրենց համար արածում էին, կարծես թե ոչինչ էլ չէր պատահել։

Այդպես, ահա, կատարվեց աշխարհի մեծագույն գյուտերից մեկը, որը ցույց տվեց ոչ միայն կենդանիների, այլև մարդկանց կյանքի պահպանման ուղին։

Դեռ 1880 թվին Պաստյորը սկսեց ուսումնասիրել կատաղությունը. մի սարսափելի, տանջալի և մահացու հիվանդություն, որի դիմաց ոչ մի միջոց դեռ գոյություն չուներ։ Մարդը, որին որևէ կատաղած կենդանի է կծում (շունը, կատուն, առնետը, մուկը, գայլը) սկսում է կծել, պատառոտել, իր շրջապատում եղած ամեն ինչ ջարդ ու փշուր անել և վերջն էլ սարսափելի գալարումների մեջ մահանում է։

Այս անգամ դժվարությունը կայանում էր նրանում, որ ներարկումը պետք է կատարվեր կծելուց հետո միայն, այսինքն՝ վարակումից հետո։ Սակայն Պաստյորը գիտեր,



որ վարակման և հիվանդության երևան գալու մոմենտների միջև սովորաբար որոշ ժամանակ է անցնում։ Խոլերան և գրիպը, օրինակ, հայտնաբերվում են վարակումից 1—5 օր հետո, ժանտախտը՝ 2—4 օր հետո, սիֆիլիսը՝ 3—4 շաբաթից հետո։ Իսկ կատաղությունը զարգանում է կծումից 6—8 շաբաթ հետո և դեռ ավելի ուշ։

Պաստյորն օգտագործեց հիվանդության զարգացման այդպիսի երկար ժամկետը այն նպատակով, որպեսզի մինչև հիվանդության զարգանալը, ներարկման միջոցով արհեստականորեն նույն հիվանդությունն առաջացներ այն կենդանու մեջ, որը կծված էր, և որ սակայն զարգանում է ավելի արագ, հեշտ և կենդանու օրգանիզմը կայունացնում է կատաղություն հիվանդությանը դիմադրելու գործում։ Այսպիսով, այն ժամանակ, երբ կծելուց առաջացած հիվանդությունը նոր սկսում է երևան գալ, նա արդեն ներարկման շնորհիվ հանդիպում է, այդ հիվանդությունն արդեն անց կացրած և նրան դիմադրող օրգանիզմի։

1885 թ. իր աշխատանքը Պաստյորը վերջացրեց, ստուգելով այն մեծ քանակությամբ կենդանիների վրա։

Նույն թվին, պատահեց այնպես, որ իննամյա Ժոզեֆ Մեյստերին կատաղած շուն

կած էին 5 կով, մեկ այծ և 22 ոչխար, կենդանիների այն թվից, որոնց նախապահպանական ներարկում չէր կատարված։ Երկու ոչխար ծանր դրության մեջ էին և մեկ օր հետո նրանք էլ սատկեցին։ Ընդհակառակը, այն կենդանիները, որոնց նախապահպանական ներարկումներ էին կատարված, մնացել էին կենդանի և անվրդով կերպով իրենց համար արածում էին, կարծես թե ոչինչ էլ չէր պատահել։

Այդպես, ահա, կատարվեց աշխարհի մեծագույն գյուտերից մեկը, որը ցույց տվեց ոչ միայն կենդանիների, այլև մարդկանց կյանքի պահպանման ուղին։

Դեռ 1880 թվին Պաստյորը սկսեց ուսումնասիրել կատաղությունը. մի սարսափելի, տանջալի և մահացու հիվանդություն, որի դիմաց ոչ մի միջոց դեռ գոյություն չուներ։ Մարդը, որին որևէ կատաղած կենդանի է կծում (շունը, կատուն, առնետը, մուկը, գայլը) սկսում է կծել, պատառոտել, իր շրջապատում եղած ամեն ինչ ջարդ ու փշուր անել և վերջն էլ սարսափելի գալարումների մեջ մահանում է։

Այս անգամ դժվարությունը կայանում էր նրանում, որ ներարկումը պետք է կատարվեր կծելուց հետո միայն, այսինքն՝ վարակումից հետո։ Սակայն Պաստյորը գիտեր,



որ վարակման և հիվանդության երևան գալու մոմենտների միջև սովորաբար որոշ ժամանակ է անցնում։ Խոլերան և գրիպը, օրինակ, հայտնաբերվում են վարակումից 1—5 օր հետո, ժանտախտը՝ 2—4 օր հետո, սիֆիլիսը՝ 3—4 շաբաթից հետո։ Իսկ կատաղությունը զարգանում է կծումից 6—8 շաբաթ հետո և դեռ ավելի ուշ։

Պաստյորն օգտագործեց հիվանդության զարգացման այդպիսի երկար ժամկետը այն նպատակով, որպեսզի մինչև հիվանդության զարգանալը, ներարկման միջոցով արհեստականորեն նույն հիվանդությունն առաջացներ այն կենդանու մեջ, որը կծված էր, և որ սակայն զարգանում է ավելի արագ, հեշտ և կենդանու օրգանիզմը կայունացնում է կատաղություն հիվանդությանը դիմադրելու գործում։ Այսպիսով, այն ժամանակ, երբ կծելուց առաջացած հիվանդությունը նոր սկսում է երևան գալ, նա արդեն ներարկման շնորհիվ հանդիպում է, այդ հիվանդությունն արդեն անց կացրած և նրան դիմադրող օրգանիզմի։

1885 թ. իր աշխատանքը Պաստյորը վերջացրեց, ստուգելով այն մեծ քանակությամբ կենդանիների վրա։

Նույն թվին, պատահեց այնպես, որ իննամյա Ժոզեֆ Մեյստերին կատաղած շուն

կծեց։ Փոքրիկի վրա 14 վերք կար։ Բժիշկները գտան, որ մահն անխուսափելի է։

Այդ փոքրիկի վրա Պաստյորը փորձեց իր սրսկումները։ Տղան կենդանի մնաց։

Դա կատաղությունից բժշկելու առաջին դեպքն էր աշխարհում։

Հետևյալ տարին Պաստյորի մոտ բերին 19 ռուս գյուղացիներ, որոնց կծել էր կատաղած գայլը։ Շատ տանջանքներ էին կրել այդ գյուղացիները՝ մինչև նրանց Պաստյորի մոտ ուղարկելը։ Երկու շաբաթ նրանք ճանապարհին էին գտնվել։ Պաստյորի մոտ նրանք հասան ծանր դրության մեջ։ Նրանցից երեքը Պաստյորի մոտ հասնելուց քիչ հետո մահացան, իսկ 16-ի կյանքը Պաստյորը փրկեց։

Այժմ աշխարհի համարյա բոլոր երկրներում կան այսպես կոչված Պաստյորյան կայաններ, որտեղ կատարվում են ներարկումներ՝ կատաղած կենդանների կծումների դեմ։

## ՄԻԿՐՈԲՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՄԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ ԼՈՒԾՎԱԾ Է

Եկեղեցականները պնդում են, որ աստվածն իր զայրույթն արտահայտում է միկրոբների միջոցով, որոնց նա ստեղծում է մեղավոր մարդկանց և կենդանիների մարմիններում։



Դա միանգամայն սխալ է։

Հիվանդ մարդկանց և կենդանիների մարմիններում միկրոբներ առաջանալու հարցը նույնպես Պաստյորը լուծեց։

Իր գիտական գործունեության սկզբում Պաստյորն ուսումնասիրելով խմորման (брожение) պրոցեսը, ապացուցեց, որ բոլոր տեսակի խմորումները (брожение) առաջանում են միկրոբների առկայության շնորհիվ։

Այդ գյուտն արմատապես փոխեց գարեջրագործության և գինեգործության պրոցեսները։ Մինչև Պաստյորը, գինու և գարեջրի որակը պատահական էր լինում. երբեմն ստացվում էին հիանալի ըմպելիքներ, իսկ երբեմն չէին ստացվում անգամ քիչ թե շատ տանելի խմիչքներ, չնայած գործ դրած ջանքերին։

Իսկ այժմ պարզվեց, որ խմորման պրոցեսը կախված է այն բանից, թե ինչպիսի միկրոբներ կան խմորմանը ենթակա հեղուկում, հասկանալի դարձավ, որ եթե արհեստական կերպով մտցվեն այնտեղ պահանջված միկրոբները և ոչնչացվեն ոչ-ցանկալիները, ապա կարելի կլինի լավացնել գինու և գարեջրի որակը և ստեղծել ցանկացած տեսակի խմիչքը։

Այս գյուտը փոխեց նաև քացախի, պանրի, հացի և առհասարակ բոլոր այն արտա-

կուլտուրաների պրոցեսները, որտեղ տեղի է ունենում խմորում։

Իսկ ի՞նչպես էր կատարվում խմորումը, մինչ Պաստյորի գյուտը։ Ո՞րտեղից էին խըմորմանը ենթակա հեղուկում ընկնում միկրոբներ, եթե ոչ ոք նրանց այնտեղ չէր մտցնում։

Այս հողի վրա մեծ վեճ առաջացավ Պաստյորի և նրա ժամանակակից գիտնականների միջև։

Այն ժամանակները ենթադրում էին, որ միկրոբները խմորմանը ենթակա հեղուկում իրենք-իրենց են առաջանում։ Այն համոզմունքը, որ կենդանի էակները կարող են առաջանալ իրենք-իրենց, վաղուցվանից լայն տարածված էր այն ժամանակվա գիտնականների մեջ։

16-րդ դարի գիտնականներից մեկը՝ Վան Գելմոնտը գրում էր. «Ճահիճների հատակից բարձրացող գոլորշիները ծնեցնում են գորտեր, հողախխունջներ, տզրուկներ և շատ այլ բաներ»։ Այնուհետև՝ «Բավական է կեղտաջրից հանած շապիկը քամել որևէ ձավարաձև ամանի բերանի վրա, որի անցքում տեղավորված են ցորենի հատիկներ, որպեսզի կեղտոտ շապկից բարձրացող գոլորշիները, ցորենի հոտի ազդեցության տակ, մոտավորապես 21 օրվա ընթացքում ցորենը մըկ-



ներ դարձնեն։ Մկները ծնվում են հասունացած։ Նրանց մեջ լինում են և՛ արուներ, և՛ էգեր»։

Այն ժամանակվա մի՛ ուրիշ գիտնական՝ Պարացելզը, տալիս է անգամ մարդ պատրաստելու արհեստական ռեցեպտ. «Վերցրեք մարդկային սերմը և թողեք որպեսզի նախ սկզբում լավ փակած դդումի մեջ, իսկ հետո 40 օր ձիու ստամոքսում, մինչև կսկսի զեռալ, շարժվել և վերջապես, ապրել, որն ի հարկե, հեշտ է նկատել։ Այն, ինչ ստացվեց, դեռ ամենևին մարդու նման չէ, նա թափանցիկ է և անմարմին, բայց եթե ամեն օր, ծածկաբար, զգուշությամբ և ողջամտությամբ նրան կերակրեք մարդկային արյամբ և պահպանեք 47 օրյակի ընթացքում ձիու ստամոքսի կայուն և հավասարաչափ ջերմության մեջ, ապա կստացվի իսկական կենդանի երեխա, որն ունի բոլոր անդամները, նման կնոջից ծնված երեխայի, սակայն շատ փոքր հասակի»։

Պաստյորն ըմբոստացավ կենդանիների ինքնաառաջացումը թույլատրող այդպիսի հայացքների դեմ, փորձով ապացուցելով, որ միկրոբները չեն առաջանում իրենք-իրենց այլ հեղուկի մեջ են ընկնում օդից։

Նա ապակե մի սրվակում բուլյոն լցրեց,

լավ եռացրեց, որպեսզի բուլյոնի մեջ եղած միկրոբները ոչնչանան, հետո սրվակի բերանը կպցրեց, որպեսզի օդից միկրոբները չկարողանան թափանցել նրա մեջ։ Մի քանի ամիսների և տարիների ընթացքում այդպիսի փակված սրվակներում և ոչ մի միկրոբ չառաջացավ։ Ուրեմն, իրականում, միկրոբները բուլյոնի մեջ ընկնում են օդից։

Սակայն Պաստյորի հակառակորդներն անձնատուր չեղան։ Նրանք հայտարարեցին, թե եռացրած և զոդված սրվակում բուլյոնը կորցնում է իր սննդարար հատկությունները և հենց այդ պատճառով էլ նրա մեջ միկրոբներ չեն առաջանում։

Այն ժամանակ Պաստյորը ջարդեց սրվակի վիզը և բուլյոնում շուտով միկրոբներ առաջացան։ Հակառակորդներն այս անգամ էլ անձնատուր չեղան։ Նրանք հայտարարեցին՝ ուրեմն, միկրոբների զարգացման համար թարմ օդի մուտք է պահանջվում։ Թո՛ղ Պաստյորը չփակի օդի ազատ մուտքը բույոնում և այն ժամանակ իսկույն միկրոբներ կառաջանան։

Խնդիրը շատ դժվար էր, բայց Պաստյորը լուծեց այն։ Այս անգամ նա բուլյոնը լցրեց օձաձև, երկարավուն և դեպի ներքև ուղղված վզով սրվակի մեջ։ Բուլյոնը նորից եփացրեց, սակայն սրվակի բերանը բաց



թողնելով։ Օդն ազատ կերպով թափանցում էր սրվակը, իսկ միկրոբները նստում էին սրվակի վզի օձաձև գալարների պատերին, դեռ բուլյոնին չհասած։ Մի քանի ամիս հետո բուլյոնն անալիզի ենթարկեցին, սակայն նրա մեջ միկրոբներ չգտան։

Պաստյորն այդպիսով հաղթանակեց։ Նա ապացուցեց, որ միկրոբների ինքնագոյանալն անհնարին է։ Ինչպես բոլոր այլ կենդանի էակները, նույնպես և միկրոբները ժամանակակից պայմաններում ծնվում են իրենց նմաններից միայն։

Պաստյորի գյուտից կառչեցին բոլոր եկեղեցականները։ Քանի որ կենդանի էյակը չի կարող ինքն իրեն գոյանալ ոչ-կենդանի նյութից,— ասում էին նրանք,— ուրեմն, գոյություն ունի աստված, որը և հանդիսանում է կյանքի ստեղծողը։

Համաձայն եկեղեցական ուսմունքի և զանազան իդեալիստական թեորիաների, կենդանի օրգանիզմ ստեղծելու համար բավական չեն միայն այն նյութերը, որոնք կան բնության մեջ և որոնցից բաղկացած է օրգանիզմը։ Անհրաժեշտ է նաև նրա մեջ ներմուծել ինչ-որ «կենդանի ոգի», անհրաժեշտ է, որպեսզի անկյանք մատերիան ոգեշնչվի ինչ-որ «հոգևոր սկզբնաղբյուրի» կողմից։

Պաստյորի գյուտի նմանօրինակ մեկնա-

բանումը ճանդիսանում էր կամ չհասկանալու, կամ էլ հասկանալ չկամենալու արդյունք։

Այնինչ, հենց Պաստյորի, մեծագույն բընախույզ Դարվինի և մարքսիզմի հիմնադիրներից մեկի՝ Ֆրիդրիխ Էնգելսի աշխատությունները հիմնովին ժխտեցին կյանքի ծագման մասին ունեցած կրոնական և կեղծ գիտական-իդեալիստական հայացքները։ Այս մեծագույն գիտնականների հետազոտությունները ցույց տվին, որ կյանքն իր էությամբ մատերիալական է (նյութական է)։

Ներկայումս երկրագնդի վրա գոյություն ունեցող ոչ մի օրգանիզմ— կենդանական և բուսական— չի առաջացել միանգամից, այլ հանդիսանում է զարգացման երկարատև պրոցեսի արդյունք, որը տեղի է ունեցել բազմաթիվ միլիոն տարիների ընթացքում։ Այդ զարգացումը կատարվել է պարզագույն, նախնական ձևերն ավելի բարդ ձևերի աստիճանական փոխանցումների ուղիով։

Իրենց հերթին այդ պարզագույն նախնական կենդանի էակներն առաջացել են ոչ-կենդանի մատերիայից (նյութից) և ոչ թե ինչ-որ խորհրդավոր ուժի ոգեշնչման հետևանքով, այլ հենց այդ մատերիայի (նյութի) զարգացման հետևանքով։ Կենդանի մատերիան հանդիսացել է մատերիայի զար-



գացման որոշ ետապը։ Այդ զարգացումը կատարվել է միլիոնավոր տարիներ սրանից առաջ, երկրագնդի գոյության այլ պայմաններում, քան այժմ։ Երկրագնդի և երկրագընդի վրայի ջերմությունն այն ժամանակ ավելի բարձր աստիճանի էր, քան այժմ. ավելի շատ խոնավություն կար. երկրագնդի վրա գտնվող նյութերն այն ժամանակ այլ դրության մեջ էին, քան այժմ։

Այդ նյութերն աստիճանաբար իրար հետ շփվելով կազմել են զանազան միացություններ, առաջացրել են զանազան զուգակցություններ։ Այդ զուգակցություններն աստիճանաբար ավելի բարդ են դարձել, մինչև որ վերջապես նյութերի այդ անընդհատ շարժման որևէ էտապում առաջացել են մատերիայի մասնիկների այնպիսի կապակցություններ, որոնք արդեն օժտված են եղել օրգանական հատկություններով և առաջացրել են կենդանի մատերիայի սկզբնական սաղմերը։ Կյանքի այդ սկզբնական սաղմերից, իրենց կառուցվածքի աստիճանական բարդացման ճանապարհով, միլիոնավոր տարիների ընթացքում զարգացել են ժամանակակից կենդանիները և բույսերը։

Այսպիսով, կյանքը երկրագնդի վրա առաջացել է առանց աստծո կամ որևէ հոգևոր սկզբնաղբյուրի միջամտության։ Անհրաժեշտ

էին միայն որոշ նյութական պայմաններ, որոնք և գոյություն ունեին երկրագնդի վրա, միլիոնավոր տարիներ սրանից առաջ։ Սակայն այժմ, ինչպես և 10—20, նույնիսկ 100 հազար տարի սրանից առաջ ոչ-կենդանի մատերիան արդեն չի կարող զարգանալ և դառնալ կենդանի, որովհետև երկրագնդի վրայի ներկա պայմաններն այլևս այն չեն, ինչ միլիոնավոր տարիներ սրանից առաջ։ Ներկայումս կենդանի էակն առաջանում է միայն կենդանի էակից։

Այժմ գիտնականները մանրազնին կերպով և համառորեն ուսումնասիրում են կյանքի ծագման պայմանները։ Իրենց լաբորատորիաներում նրանք աշխատում են արհեստական կերպով ստեղծել խոնավության, ջերմության և այլ ճիշտ այն պայմանները, որոնք գոյություն են ունեցել երկրագնդի վրա կենդանի մատերիայի գոյացման էպոխայում։ Հեռու չէ այն ժամանակը, երբ գիտնականները կկարողանան արհեստականորեն ստեղծել էլեմենտների այնպիսի զուգակցություն, որը կենդանի բջիջի հիմքը կկազմի։

Պաստյորի գյուտը միկրոբների ինքնածընման անհնարինության մասին ժամանակակից պայմաններում, բժշկության ասպարի-



զում, մեծագույն գործնական օգտագործություն ձեռք բերեց։

Մինչև Պաստյորը, հաղվադեպ անդամահատություն, անգամ ամենահասարակը, կարող էր հաջողությամբ պսակվել։ Շատ հաճախ, անդամահատությունները վերջանում էին մահացությամբ։ Վերքում թափանցած միկրոբներն առաջացնում էին ծանրագույն բարդություններ։

Պատերազմի ժամանակ վերքերի միկրոբներով վարակվելուց 8 անգամ ավելի շատ էին մահանում, քան անմիջականորեն վերքերից։

Շատ թվով կանայք ծննդից հետո մահանում էին ծննդատենդով, միկրոբներով վարակվելու հետևանքով։

Հայտնի է, որ բնության երևույթների էությունը չհասկացող, նրանց դեմ պայքարելու անզոր, տգետ մարդը հակված է այդ երևույթները վերագրել աստծո միջամտությանը։ Եվ, քանի որ մինչև Պաստյորը, մարդիկ շատ քիչ բան գիտեին միկրոբների մասին, ապա և մարդկանց և անասունների բարձր մահացությունը և հիվանդացությունը նույնպես բացատրում էին աստծո զայրույթով, համարում էին երկիր ուղարկված պատիժ կամ փորձանք։

Հենց որ Պաստյորը պարզեց հիվանդու-

թյունների խուկական պատճառները, արդեն հնարավորություն ստեղծվեց պայքարել հիվանդությունների դեմ և հաղթել նրանց։

Ներկայումս ամենաբարդ անդամահատությունները անգամ հաջող են անցնում, իսկ երկունքից հետո տեղի ունեցող ծննդատենդն այժմ նկատվում է միայն այն դեպքում, երբ կինը չի կատարում բժշկի խորհուրդները և դիմում է տատմերներին, գրբացներին, հարևանուհիներին, որոնք իրենց կեղտոտ ձեռքերով վարակում են նրան, ծննդատենդի միկրոբներով։

Բանից դուրս եկավ, որ աստվածն այստեղ ոչ մի գործ չուներ։ Պաստյորի մեծագույն գյուտը կրոնին ջախջախիչ հարված հասցրեց։

Պաստյորի ուսմունքն ստուգված է հսկայական պրակտիկայով, իսկ այդ պրակտիկան փայլուն կերպով հաստատեց նրա անվիճելի ճշտությունը։ Չկա բժշկության, գյուղատնտեսության մի ճյուղ, որի վրա ազդեցություն ունեցած չլինի այս հանճարեղ ուսմունքը։

1895 թվի սեպտեմբերի 28-ին Պաստյորը մահացավ։ Չնայած, որ Պաստյորը կաթված ուներ, այնուամենայնիվ, նա մինչև իր կյանքի վերջին օրը չդադարեցրեց իր աշխատանքը։



Նա ապացուցեց, որ հիվանդությունները առաջանում են միկրոբներից։ Նա տվեց մարդկությանը միկրոբների աշխարհին տիրանալու բանալին, մի աշխարհ, որը հազարամյակների ընթացքում մարդուն պահել էր իր իշխանության տակ։ Նա իր աշխատություններով օգնեց մարդկությանը՝ փշրել աստծո գոյության և նրա ամենակալ հզորության մասին եղած հյուլիաները։

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ